# ՓԵՏՐՎԱՐԻ 23-Ը ՍՈՎԵՏԱԿԱՆ ԲԱՆԱԿԻ ԵՎ ՌԱԶՄԱԾՈՎԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԻ ՕՐՆ Է




**«ԹՈՌԱՆ ՎԵՐԱԴԱՐՁԸ»**

Հերբերտ Բաղդասարյանի և Ռուդոլֆ Հակոբյանի այս լուսանկարը 1975 թ. Բեռլինում արժանացել է «Ինտերպրեսֆոտո—75» լուսանկարչական միջազգային մրցույթի «Գրան պրի» մրցանակին:

ԳՐԻԳՈՐ ՄԱԶՄԱՆՅԱՆ

## Ջա՛ն, ձյուն է գալիս

Իջնո՛ւմ են, իջնո՛ւմ փաթիլներն արծաթ,
Գրկում են իրար, ժպտում, ծիծաղում։
Ու երբ նստում են ճյուղերի վրա,
Ասես ճյուղերից աստղեր են կախվում։

Հրճվանք է իջնում այս ձյան հետ մեկտեղ.
Մի ջերմ զգացում պարուրում է քեզ։
Ջերմա՛կ փաթիլներ, իջե՛ք ամեն տեղ,
Իջե՛ք, տխուր է ձմեռն առանց ձեզ։

## Ձմեռն անտառում

Վրան է զարկել ձմեռն անտառում,
Եվ ծառ ու թփեր ննջում են խաղաղ։
Վերջալույսների խարույկն է վառվում,
Բայց չի տաքանում անտառը, ավա՛ղ։

Խոր քուն են մտել արջը և մեղուն,
Սառել, սսկվել է շրջմոլիկ քամին,
Բացատ է իջել սիրուն եղջերուն,
Ինչպես այն ուրախ գարնան օրերին։

Նա մայր անտառի դուստրն է չքնաղ,
Հայացքը՝ անմեղ, սլացքը՝ վայրի,
Ասես չի զգում ձմռան շունչը պաղ,
Ասես հսկում է նինջը անտառի։

Լուսանկարը՝ ԶԱՎԵՆ ՍԱՐԳՍՅԱՆԻ





# ՎԵՐԱԴԱՐՁ

Ռ. ՎԻԿԿԵՐՍ, Ա. ԿԱՆԵՎՍԿԻ

Արծաթափայլ հրթիռը ճեղքելով մթնոլորտը և կտրուկ արգելակելով, փափուկ վայրէջք կատարեց տիեզերակայանում: Սաղավարտի վրայից թափ տալով տիեզերական փոշին՝ նավախցիկից խոտերի մեջ ցատկեց քսանամյա տիեզերագնաց Վսեվոլոդ Դոբկինը: Նրա ջահել դեմքը ուրախությունից շողշողում էր. առաջին անգամ նա էր իր նավով հաղթահարել լույսի արագությունը: Դիմավորողներից համեստորեն ընդունելով գարնանային ծաղիկների փունջն ու ջերմ շնորհավորանքները, նա ուղղվեց դեպի տուն:

Քաղաքն, իհարկե, անճանաչելիորեն փոխված էր, բայց հարազատ թաղամասը մնացել էր այնպես, ինչպես եղել էր: Տունն էլ էր իր տեղում: Դժվարությամբ զսպելով հուզմունքը՝ տիեզերագնացը սեղմեց 110-րդ բնակարանի զանգի կոճակը: Դուռը բացեց անծանոթ, բայց համակրելի մի ծերունի՝ հագին խալաթ, ոտքերին՝ հողաթափեր:

— Եթե քննության համար եք եկել, ապա էլ չեմ ընդունում,— բավականին խիստ տոնով հայտարարեց ծերունին:— Այո՜...ս: Շուտով մի ամիս կլինի, ինչ թոշակի եմ անցել:

Անսպասելիությունից Սևայի ձեռքից ծաղիկներն ընկան:

— Իսկ դուք ինքներդ ո՞րտեղացի եք, եթե, իհարկե, գաղտնիք չէ,— հարցրեց նա:

— Հեռվից,— կմկմաց Վսեվոլոդը:

— Վաղո՞ւց եք այստեղ:

— Ոչ այնքան: Ես ախր այստեղացի եմ: Այս տնից:

— Հա՜, ուրեմն դուք մեր հարևա՜նն եք,— մեղմացավ ծերունին:— Իսկ ո՞ր բնակարանից եք:

— Այս բնակարանից: 110-րդ:

Պապիկը վիրավորվեց.

— Դա ի՜նչ կատակ է: Սա ի՛մ բնակարանն է:

Այստեղ Սևան չկարողացավ այլևս զսպել իրեն.

—Ո՜չ, ներո՜ղ կլինեք: Սա ի՛մն է:

— Ներեցեք, բայց ինձ ո՜ղջ քաղաքն է ճանաչում,— վրա էր տալիս անծանոթ ծերունին:— Իմ ազգանունը Դոբկին է:

Այդ պապիկն սկսում էր կատաղեցնել Սևային: Ա՜յ քեզ անպատկառ: Նախ յուրացրել է ուրիշի բնակտարածությունը, իսկ հիմա էլ ուզում է ազգանվան գլխին օյին բերել:

Ծերունին չէր հանդարտվում:

— Հապա մի այստե՜ղ նայեք,— գոռգոռում էր նա՝ տիեզերագնացին հրելով դեպի դուռը, որի վրա շողշողում էր «Պրոֆեսոր Դոբկին Պ. Վ.» մակագրությունը:— Իսկ դուք դեռ կասկածո՜ւմ եք: Ախր ես այստեղ ամբո՜ղջ կյանքս եմ ապրել: Այստե՜ղ եմ ծնվել, այստե՜ղ մեծացել...

Հանկարծ նա ձայնը կտրեց: Զարհուրելի մի բան անցավ մտքով:

— Սպասեցե՛ք... Ձեր անունն ի՞նչ է:

— Վսեվոլոդ:

— Հայրանո՞ւնը:

— Պետրովիչ:

— Հայրի՜կ,— կանչեց ծերունին և տիեզերագնացի վզովն ընկավ:

— Որդյա՜կս,— շշնջաց Սևան՝ կրծքին սեղմելով իր զավակին:— Ես այդ ինչպե՜ս իսկույն գլխի չընկա:

Նրանք ձեռք-ձեռքի տված՝ հյուրասենյակը մտան: Խոսում էին՝ միմյանց

«Հարաբերականության տեսությունը ես այսպես եմ հասկանում. միջմոլորակային հրթիռով թռչում ես մի ամիս, իսկ Երկրի վրա այդ ընթացքում անցած է լինում մի տարի: Վերադառնում ես, և արդեն դպրոց գնալու կարիք չի լինում»:

*(Ֆիզիկայի դասին 7-րդ Բ դասարանի աշակերտ Սևա Դոբկինի տված պատասխանից):*

ընդհատելով, շփոթվելով: Երկուսն էլ հուզված էին մինչև հոգու խորքը:

— Պա՛շկա, որդյա՛կս,— մրմնջում էր Վսեվոլոդը:— Այս ի՛նչ մեծացել ես, ի՛նչ գեղեցիկ տղամարդ ես դարձել:

— Հայրի՛կ ջան, հայրի՛կ,— թոթովում էր ծերունին:— Քանի՛ տարի եմ սպասել: Եկա՛ր վերջապես...

Բայց հուզմունքը, ինչպես ամեն բան այս աշխարհում, անցավ գնաց, և ծերունին անհանգստացած ասաց.

— Դե էլ ի՛նչ ենք նստել: Դու, երևի, սոված կլինես:

— Մեղք կլիներ որևէ կերպ չնշել այսպիսի հանդիպումը, — ակնարկեց հայրը:

— Չեմ առարկում,— աչքով արավ որդին՝ տնային դեղատուփից հանելով երկու պստլիկ դեղահաբ:

— Դա ի՞նչ բան է,— զարմացավ Վսեվոլոդը:

— Ալկոհոլի փոխարինիչ, բացատրեց ծերունին:— Հիանալի ակտիվացնող միջոց է:

— Ի՞նչ օղո՞ւ բանն ինչպես է:

— Բա՛ն հիշեցիր: Դեռևս տարիներ



*Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ*

առաջ համաժողովրդական պահանջի համաձայն ողջը ոչնչացրել են: Միտինգներ արեցին, պլակատներով փողոց դուրս եկան: Բոլոր պլակատների վրա շիշ էր նկարված: Երեք հոգուն՝ մի պլակատ:

Հարկ եղավ բաժակների փոխարեն դեղահաբերը չրխկացնել: Դրանք անուշ-անուշ հալվում էին լեզվի տակ և հաճելի ազդեցություն թողնում օրգանիզմի վրա: Վսեվոլոդը նույնիսկ ըսկըսեց ուրախ երգեր երգել, իսկ պրոֆեսորը օգտվելով նրա տրամադրությունից՝ սրտապնդվեց և առեղծվածորեն ասաց.

— Դու չե՞ս բարկանա, եթե քեզ մի բան ասեմ:

— Նայած թե ինչ:

— Ձէ՛, խոստացի՛ր, որ չես բարկանա:

— Իսկ դու ի՞նչ ես արել որ. լուսամո՞ւտ ես ջարդել, կռի՞վ ես արել:

— Ո՛չ, շատ ավելի լուրջ բան...

— Դե, հոգի մի՛ հանի: Ի՞նչ է եղել:

Ծերունին ծանր հառաչեց ու խոստովանեց.

— Հայրի՛կ, ես ամուսնացել եմ:

Սևան չբարկացավ, բայց տրամադրությունն ընկավ: Ամուսնանալ՝ առանց հոր հետ խորհրդակցելու, այլ նրան պարզապես կատարված փաստի առաջ կանգնեցնել... Ահա թե ինչպիսի՛ն են հիմիկվա զավակները...

— Բայց դու մի՛ հուզվիր, հայրի՛կ: Անեչկան հիանալի աղջիկ է. արդեն թոշակի է անցել: Մենք երեսուն տարի իրար հետ յուղումեղր ենք եղել:

...Տասնհինգ րոպե անց, ներս ճախրեց Անեչկան: Փոքրիկ, աշխույժ պառավ էր: Նա հաճելի շփոթմունքի մեջ ընկավ, երբ իմացավ, թե երիտասարդ հյուրն իրեն ինչ է գալիս:

— Ներեցեք դուք ինձ, Վսեվո՛լոդ Պետրովիչ, որ այդպես դասավորվեց...

— Դե, դու էլ ի՛նչ ես՝ Պետրո՛վիչ հա Պետրո՛վիչ,— կատակով բարկացավ Սևան:— Ինձ պարզապես «հայրիկ» ասա:

Պառավը պայուսակը բացեց, որ թաշկինակը հանի արցունքները սրբելու համար, իսկ պրոֆեսորը երախտագիտությամբ ասաց.

— Ուրեմն դու ինձ չե՞ս դատապարտում, հայրի՛կ:

— Ո՛չ: Դու պետք է նրա հետ ապրես, Պա՛շկա:

Անեչկան աշխույժ ճվվալով՝ անկողին էր գցում հյուրի համար:

— Հանգստացե՛ք, հայրի՛կ, ճամփից եք եկել: Իսկ ընթրիքին կկանչենք մեր երեխաներին: Ա՛յ թե կուրախանան՝ պապիկին տեսնելով: Ձև որ դուք միևնույն տարիքի եք, միևնույն հետաքրքրություններով:

Բայց Վսեվոլոդը չէր համակվում ընդհանուր ուրախությամբ: Տխուր մտքերը ճնշում էին նրան. ահա և ին քը պապիկ է դարձել: Իսկ հետո՞ ին՞չ է լինելու: Ո՞րտեղ է ապրելու: Եվ. ասես թե կռահելով նրա մտատանջությունը՝ իմաստուն, ճերմակահեր որդին հանգստացրեց երիտասարդ հորը.

— Մե՛զ մոտ կապրես, հայրի՛կ: Նեղվածք է, բայց ոչինչ: Նեղ կանենք, տեղ կանենք:

— Բայց այստեղ ինձ կարող են և չգրանցել: Քանի՛ տարի է, ինչ այստեղից մեկնել եմ:

Ծերունին մի կողմ քաշեց կնոջը, նրա հետ ինչ-որ բան քչփչաց, և Սևայի ուսին թփթփացնելով՝ հանդիսավորապես ասաց.

— Մի՛ վախի, ա՛յ հեր, մենք քեզ կորդեգրե՛նք:

*Թարգմ. ՀԱՄՈ ՀԱՐՅԱՆԻ*

# ՄԱՅՐ ԻՄ

Մա՛յր իմ, խուժեցի խորքը քո սրտի,
Բացեցի բոլոր պատուհանները,
Շատ որոնեցի,
Այնտեղ չգտա ձմռան պատուհան:
Մա՛յր իմ, քո սրտում գարուն է միայն...



ԱԼԵՔՍԱՆԴՐՈՍ ՅԱՆԻՍԸ ծնվել է 1953 թ. Երևանում: Նրա հայրը հույն է, մայրը՝ հայ: Ալեքսանդրոսը բանվոր է, աշխատում է Երևանի շինանյութերի փորձարարական գործարանում: Նա գրում է բանաստեղծություններ, ահա դրանցից մի քանիսը:

# ՊԱՏՈՒՀԱՍԸ

Աշխատում են հայրն ու մայրը,
Որդին անգործ նստած տանը,
Գանգատվում է ժամանակի դանդաղ քայլից:
— Օ՜ֆ, դժվար է ապրել կյանքում,
Մեր ձանձրալի մոլորակում...

Հագել է նոխ ու մոդայիկ,
Սակայն ոչ մի գործի համար
Դեռ չունի ձիրք.
Մայրը նայում ու հրճվում է.
— Բալիս բոյը ծառ է նուբար,
Իսկ աչքերը՝ կապույտ երկինք,
Բա մազե՜րը՝ գանգուր ու սև,
Բա հոնքե՜րը՝ բարակ ու կեռ...
Էլ չի ասում.
— Ազիզ բալաս
Ե՛վ իմ գլխին, և՛ բոլորի
Դառնալու է մեծ պատուհաս...

# ԱՍՈՒՄ ԵՆ, ԻԲՐԵՎ

Ասում են, իբրև,
Մի մարդ իր վիշտն է պահ տվել հողին.
Եվ հողի գրկից ծաղիկ է ծնվել, նայել արևին:
Մարդը պոկել է ծաղիկը սիրուն և կուշտ ծիծաղել:
Նա ծիծաղել է, խնդությամբ լցվել,
Մինչդեռ ծաղիկը
Լուռ թառամել է նրա վշտերից...



ԵՎՍ ՄԵԿ-ԵՐԿՈՒ ՏԱՐԻ, ԵՎ «ՊԻՈՆԵՐԻ» ԱՅՍՕՐՎԱ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ԱՌՋԵՎ ԿԾԱՌԱՆԱ ՄԱՍՆԱԳԻՏՈՒԹՅՈՒՆ ԸՆՏՐԵԼՈՒ ՀԱՐՑԸ։ ՆՐԱՆՑ ՕԳՆԱԾ ԼԻՆԵԼՈՒ ՆՊԱՏԱԿՈՎ, ԱՅՍ ՀԱՄԱՐԻՑ ՍԿՍԱԾ ԿՆԵՐԿԱՅԱՑՆԵՆՔ ՄԵՐ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՊՐՈՖՏԵԽԿՐԹՈՒԹՅԱՆ ԱՉՔԻ ԸՆԿՆՈՂ ՕՋԱԽՆԵՐԸ։



*Մասնագիտություն ընտրելու ճանապարհին*

# ՍՈՎՈՐԵԼՈՒ ԵԿԵՔ ՄԵԶ ՄՈՏ



*ՍՈՒՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ*
*Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի պրոֆտեխկրթության պետական կոմիտեի նախագահ*

Անվանի բանաստեղծ Հովհաննես Շիրազը, որն ավարտել է Լենինականի տեքստիլ կոմբինատի պրոֆտեխնիկական ուսումնարանը, իր բանաստեղծություններից մեկում ըստ արժանվույն գնահատել է արհեստի, մասնագիտության նշանակությունը։

Երբ ես էլ մի ջինջ պատանի դարձա,
Մայրս ինձ ասաց՝ «Արհեստի գնա,
Արհեստ սովորիր, մի լինի նազուկ,
Արհեստն է մարդուն ոսկի բլազուկ»։

Հայաստանի բազմաթիվ հոյակապ կոթողները լուռ վկա են այն ջերմ սիրո և հարգանքի, որ ցուցաբերել է մեր ժողովուրդը մասնագիտությունների նկատմամբ։ Անվանի վարպետները ստեղծել են մեր ժողովրդին արժանի հուշարձաններ, որոնք հիացմունք են պատճառում Հայաստան այցելող բազմահազար զբոսաշրջիկների, աշխարհի տարբեր երկրներից ժամանող պատվիրակների, գիտության ու կուլտուրայի գործիչների։ Մասնագիտական-տեխնիկական կրթությունը, սակայն, որպես պետական միջոցառում անցյալում չի եղել։ Ծնողները ավանդաբար իրենց մասնագիտությունը սովորեցրել են զավակներին և այն փոխանցել սերնդից սերունդ։

Սովետական իշխանության հաստատումից հետո, պետությունը ժողովրդական կրթության, այդ թվում նաև պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության ծախսերն ու հոգսերը վերցրեց իր վրա և դրեց նրա զարգացման ու հետագա կատարելագործման ամուր հիմքերը։

Հպարտությամբ կարող ենք նշել, որ Սովետական Հայաստանում պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթությունը, կոմունիստական կուսակցության ու սովետական կառավարության ջերմ հոգատարության շնորհիվ, աճել, զարգացել և դարձել է համապետական մի կուռ սիստեմ, որը մասնագիտական բարձր որակավորման բանվորական կադրեր է պատրաստում հանրապետության ժողովրդական տնտեսության բազմապիսի բնագավառների համար։

Ընթացիկ 1979—1980 ուսումնական տարում Հայաստանում գործում են 100 տեխնիկական ու պրոֆտեխնիկական ուսումնարաններ, որոնցում սովորում են ավելի քան 80 հազար պատանիներ ու աղջիկներ, մոտ 200 մասնագիտությունների գծով, այդ թվում՝ այնպիսի բարդ մասնագիտությունների, ինչպիսիք են՝ էլեկտրոնային հաշվիչ մեքենաներ հավաքող-մոնտաժողներ, քիմիական արդյունաբերության ապարատավարներ, լաբորանտներ, էլեկտրավակուումային արդյունաբերության մասնագետներ, արհեստական ալմաստի արտադրության մեջ ավտոմատ գծեր կարգավորող վարպետներ, ինչպես նաև շինարարության, կիրառական արվեստի, սպասարկման ոլորտի ձեռնահաս մասնագետներ։ Գիտատեխնիկական հեղափոխության, արտադրության տեխնիկական առաջադիմության հետևանքով ամեն տարի առաջանում են ավելի քան 800 նոր մասնագիտություններ և անհետանում են իրենց ժամանակն ապրած մասնագիտությունները։ Գիտատեխնիկական

առաջադիմությունը ժամանակակից բանվորից պահանջում է հանրակրթական և մասնագիտական խոր գիտելիքներ: Ահա թե ինչու այժմ պրոֆտեխնիկական ուսումնական հաստատությունները վերակառուցվում, վերածվում են միջնակարգ կրթությամբ մասնագիտական կադրեր պատրաստող ուսումնարանների:

Հայաստանում գործում են 55 միջնակարգ և 33 տեխնիկական ուսումնարաններ, այսինքն ուսումնական հաստատությունների ավելի քան 90 տոկոսը արդեն պատրաստում են միջնակարգ կրթությամբ որակյալ բանվորներ: Այժմ բազմաթիվ երիտասարդներ սիրով գալիս են սովորելու պրոֆտեխնիկական ուսումնարաններում՝ ստանալու հանրակրթական միջնակարգ և միաժամանակ մասնագիտական կրթություն: Սակայն երիտասարդների մեջ կան նաև այնպիսիները, որոնք մակերեսորեն են նայում մասնագիտություն ստանալու հարցերին: Դա, ամենից առաջ, բացատրվում է ընտանիքում և դպրոցում երեխաների աշխատանքային դաստիարակության անտեսմամբ: Մ. Ի. Կալինինը մի առիթով, խոսելով աշխատանքային դաստիարակության մասին, իրավացիորեն նշում է, որ մենք դպրոցներում կարծես որոշ իմաստով ինտելիգենտացնում ենք աշակերտներին, ավելի ճիշտ՝ նրանց հեռու ենք պահում հանրօգուտ աշխատանքից: Այն երեխաները, որոնք չեն դաստիարակվում աշխատանքի համար, նրանք խեղճ կլինեն նաև կյանքում, չեն գտնի իրենց արժանի տեղը: Մեր պիոներ-դպրոցականները պետք է քաջ գիտակցեն, որ արտադրողական աշխատանքը նրանց չի զրկում հետագա գիտական, վարչական գործունեությունից: Ընդհակառակը՝ նըպաստում է գիտական, վարչակառավարչական լավագույն գործիչներ դառնալուն: Աշխարհահռչակ գիտնական, Հայաստանի գիտությունների ակադեմիայի առաջին պրեզիդենտ Հովսեփ Օրբելին երեք մասնագիտություն ուներ՝ քարտաշ-որմնադիր էր, ատաղձագործ (կարմիր փայտի լավ գիտակ մասնագետ էր) և որակյալ գրաշար: Հռչակավոր ավիակոնստրուկտոր Արտեմ Միկոյանը ավարտել է ֆաբգործուսի դպրոցը և աշխատել է որպես խառատ: Տիեզերանավերի մեծ կոնստրուկտոր Կորոլյովը, ավիացիայի մարշալ Ի. Պոկրիշկինը, առաջին տիեզերագնաց Յուրի Գագարինը, տիեզերագնացներ Իվ. Պոպովիչը, Գեորգի Բերեգովոյը ավարտել են պրոֆտեխնիկական ուսումնարաններ: Մասնագիտություն ստանալը օգնել է նրանց դառնալու անվանի գիտնական, օդագնաց: Հարկ է, որ ուսուցիչները, պիոներական աշխատողները կենդանի օրինակներով պիոներ-դպրոցականներին ճիշտ պատկերացում տան պրոֆեսիոնալ դաստիարակության մասին, օգնեն մեր պատանիներին ու աղջիկներին պրոֆեսիայի ճիշտ ընտրության դժվարին հարցերում: Պրոֆեսիոնալ կողմնորոշման պրոպագանդան, երիտասարդությանը տեղյակ պահելով ժողովրդական տընտեսության տարբեր բնագավառների բանվորական կադրերի պահանջի մասին, միաժամանակ պետք է համոզիչ փաստերով նրանց մեջ պատվաստի սեր դեպի արտադրողական աշխատանքը:

Պրոֆեսիոնալ դպրոցներում ձեռք են բերում միջնակարգ կրթություն, մասնագիտություն, նաև մասնակցում են սովորողների գեղարվեստական և տեխնիկական խմբակներին, ֆիզկուլտուրայի և սպորտի տարբեր ձևերի պարապմունքներին: Պրոֆեսիոնալ ուսումնարանները ունեն հարուստ ուսումնատեխնիկական բազա: Հանրապետության ուսումնարանները ունեն ավելի քան 960 կաբինետ-լաբորատորիաներ՝ նորագույն սարքավորումներով, 470 տարբեր մասնագիտությունների արհեստանոցներ, որոնցում իրականացվում է ապագա երիտասարդ բանվորների նախնական արտադրական ուսուցումը: Ուսումնական պրոցեսում լայնորեն օգտագործվում են ուսուցման տեխնիկական միջոցները: Ավելի քան 350 լսարաններ, կաբինետլաբորատորիաներ էկրանացված են: Դասավանդման ժամանակ ցուցադրըվում են ուսումնական կինոֆիլմեր, դիաֆիլմեր:

Սիրելի՛ պիոներ-դպրոցականներ, եկե՛ք մեզ մոտ սովորելու:

Պրոֆեսիոնալ դպրոցը օգնում է յուրաքանչյուրին գտնելու կյանքում իր արժանի տեղը:

# ԴԱՐՊԱՍԻՑ ՆԵՐՍ



Հեռվից հրաշալի մի պարտեզի է նման կամ առողջարանի՝ ծառ ու ծաղկունքի մեջ կորած: Մասնաշենքերը արդիական են, մետաղակուռ դարպասը թվում է արվեստի գործ: Կենտրոնական մասնաշենքի վրա աչքի են զարնում լյումինեսցենտային լույսերով տառերը. «9-րդ տեխնիկական ուսումնարան»:

Դարպասի ներսում հանդիպող թըփերն անգամ սովորական չեն: Մի տեղ նրանք ջայլամների տեսք են առել, կամ ընձուղտի, մեկ այլ տեղ՝ երբեմնի շոգեքարշի, իսկ ուղտերը... Ուղտերի մի ամբողջ քարավան՝ իրենց ուղեկցողով, միայն թե անապատի, ավազի փոխարեն, այստեղ կանաչի առատություն է, և ուղտերի արահետը գույնըզգույն ծաղիկներով է ծածկված:

Անգամ չոր ծառը այստեղ ոչ թե կտրվում է, այլ գեղարվեստական ձև ու նոր կյանք առնում:

Ուսումնարանի բոլոր մասնաշենքերում օրինակելի մաքրություն է տիրում: Սաներն այնպես են դաստիարակված, որ նրանց աչքը չի հանդուրժում հատակին ընկած թղթի կտոր, աղբ հիշեցնող բան, նկատողն իսկույն կռանում, բարձրացնում ու նետում է մոտիկ աղբարկղը: Մաքրությունից փայլում են հատակը, պատերը, դուռլուսամուտ, սեղան-աթոռ:

Ուսումնարանի գլխավոր մասնաշենքի առաջին ու երկրորդ հարկի պատերին սովորողների և Սովետական Միության ու սոցիալիստական երկըրների տարբեր քաղաքների 67 ուսումնարանների սաների հետ ունեցած բարեկամությանը նվիրված ցուցափեղկեր են փակցված:

Ուսումնարանի սովորողները մեկ անգամ չէ, որ մեկնել են իրենց հեռավոր բարեկամների մոտ, նրանց ուսումնական կաբինետները ձևավորելու, տեխնիկական միջոցներ տեղադրելու և դրանցից օգտվելու իրենց փորձը հաղորդելու: Տարել են իրենց պատրաստած օժանդակ սարքերն ու հարմարանքները, որոնց կարիքը ունեցել են նրանք:

ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ

## Վարպետի եռալեզու գրամեքենան



Մեքենագրական կաբինետում անսովորը գըրամեքենաների ստեղները գույներով մասերի բաժանված լինելն է: Գույներով բաժանված ստեղնաշարերին մատները հեշտությամբ են վարժվում: Ու երբ աշակերտը սովորում է ճիշտ մեքենագրել, ասես ոչ թե մեքենագրում, այլ... նըվագում է դաշնամուրի վրա:

Դժվար է հավատալ, որ վարպետ Վահեն՝

Վահե Թորգոմյանը 76 տարեկան է: Նա առույգ է պատանու նման, և միտքը սուր է: Վարպետ Վահեի նման իրենց աշխատանքով խանդավառ մարդիկ ողջ կյանքում պատանի են մնում: Աշխատանքը նրանց չի մաշում, այլ պահպանում է:

Վարպետ Վահեի պապը եղել է հեծանիվ նորոգող, հայրը՝ նավաշինարար: Իսկ վարպետ Վահեի ոչ միայն ձեռքերն են ճարտար, այլև միտքը, նա գյուտարար է: Նրա ստեղծած եռալեզու (ռուսերեն, լատիներեն և անգլերեն) գրամեքենան 1975 թվականին Մոսկվայի ժողտնտեսության ցուցահանդեսում արժանացավ ոսկե մեդալի: Այժմ վարպետն աշխատում է մի նոր գրամեքենա հորինելու վրա, որով կարելի կլինի մեքենագրել թե՛ հայերեն, թե՛ ռուսերեն:

Ամեն տարի վարպետ Վահեի ձեռքի տակից 75 որակյալ շրջանավարտ մեքենագրուհի է դուրս գալիս ու կյանք մտնում: Մանկավարժական գործունեության 27 տարիների ընթացքում վարպետը սովորեցրել է հազարավոր աշակերտաշակերտուհիների:

9-րդ ուսումնարանը վարպետ Վահեի երկրորդ տունն է, և նրա ոսկի ձեռքերը ջանք չեն խնայում իր այս տանը նույնպես շքեղություն տալու համար, ապացույց՝ խճանկար ջրավազանը ուսումնարանի բակում, որ կյանքի է կոչել վարպետը:

*Մ. ՈՍԿԱՆՅԱՆ*



# ՍԵՓԱԿԱՆ ՏԱՐԲԵՐԱՆՇԱՆՈՎ

Ուսումնարանը որակյալ մասնագետներ է պատրաստում Երևանի ռելեի, պլմաստի, ժամացույցի, այլ գործարանների և ամենից առաջ Երևանի էլեկտրալամպերի գործարանի համար, համարվում է նրա բազային ձեռնարկությունը, այլ կերպ ասած՝ գլխավոր արտադրամասը: Այս իսկ պատճառով ուսումնարանի շինարարական, արտադրական, ուսումնական և բոլոր ծախսերը կատարում է այդ գործարանը:

Այստեղ սովորողների զգալի մասը դառնում է երրորդ-չորրորդ կարգի էլեկտրալամպագործ: Ուսումնարանում կա ժամանակակից բարձր արտադրողականությամբ աչքի ընկնող երկու հարահոս, որոնցից մեկը մոմալամպեր է արտադրում, մյուսը՝ «Ժիգուլի» ավտոմեքենայի լապտերներ: Դրանցից յուրաքանչյուրը տարեկան տալիս է մեկ միլիոնից ավելի մոմալամպ ու մեքենայի լապտեր: Եթե դրանք վերածենք գումարի, ապա տարեկան նրանք տալիս են 860 հազար ռուբլու համախառն արտադրանք:

Սովորողների արտադրանքը այսօր արդեն թողարկվում է հատուկ տարբերանշանով և բարձր գնահատվում Տոլյատիի ավտոգործարանում:

# ԼԵՆԻՆՅԱՆ ՍԵՆՅԱԿ

Այստեղ կարելի է գտնել մեծ առաջնորդի կյանքի, հեղափոխական գործունեության մասին հանգամանորեն պատմող նյութեր, նկարներ, գեղանկարչական հանրահայտ ստեղծագործությունների գունավոր լուսանկարներ։

Լենինյան սենյակում են ընդունում ուսումնարանն այցելող անվանի մարդկանց, աշխատանքի և պատերազմի հերոսներին։

Կոմերիտմիության շարքերն անցնողներն այստեղ են ստանում իրենց անդամության տոմսերը։





## ՀՐԱՆՏ ՍԱՐԽՈՇՅԱՆ

— Այստեղ է կառուցվելու ուսումնարանը, — էլեկտրալամպերի գործարանի մոտակա երեք հեկտարանոց ամայի լանջը ցույց տալով, ասացին ապագա ուսումնարանի դիրեկտոր Հրանտ Սարխոշյանին։

Դա մի թեք, անհարթ դարալանջ էր, արտադրական թափոններով լըցված։

Մեկ տասնամյակ առաջ էր այդ։

Այժմ այնտեղ կանգնած է № 9 պրոֆտեխկրթության ուսումնարանը, որն օրինակելի ու ցուցադրական է համարվում ոչ միայն Հայաստանի, այլև Սովետական Միության համանուն հաստատությունների մեջ։

Անգնահատելի եղավ ուսումնարանի առաջին դիրեկտոր Հրանտ Սարխոշյանի ավանդը, որի համար և նա պարգևատրվեց Լենինի շքանշանով, արժանացավ Մոսկվայի ԺՏՆՑ-ի ոսկե մեդալի, պրոֆտեխկրթության վաստակավոր մանկավարժի կոչման և Կըրուպսկայայի անվան մեդալի։

Ուսումնարանը սրբորեն պահպանում է նրա հիշատակն ու շարունակում նրա ավանդները։

## ԹՎԵՐ, ՓԱՍՏԵՐ

- Ուսումնարանը իր մասնաճյուղերն ունի Երևանի ռելեի, ժամացույցների, ալյումինի, «Երազ», արհեստական ալմաստի գործարաններում, ինչպես նաև մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտում։

  Այժմ այդ ձեռնարկություններում աշխատում են ուսումնարանի ութ հազարից ավելի շրջանավարտներ։

- Ամեն տարի ուսումնարանն ընդունվում են 800 տղաներ ու աղջիկներ, որոնք մեկ-երկու տարում ավարտելով, ստանում են էլեկտրավակուումային սարքերի արտադրության կարգավորողի, լամպագործի, էլեկտրամոնտյորի, խառատի, ավտոէլեկտրագործի, ավտոհավաքողի, ժամագործի, գործիքագործ-փականագործի, ռադիո-էլեկտրոնային սարքեր կարգավորողի, լաբորանտի, մեքենագրուհու և այլ մասնագիտությունների որակավորում։

## ԹՎԵՐ, ՓԱՍՏԵՐ

● Ուսումնարանն ավարտողներից շատերը ներկայումս արտադրության ղեկավարներ են, արտադրամասերի, տեղամասերի պետեր, բրիգադավարներ, նորարարներ ու գյուտարարներ, արտադրության առաջավորներ: Շրջանավարտներից շատերը տիրապետում են երկու-երեք մասնագիտության:

● Արտադրական ուսուցման 80 վարպետների կեսից ավելին բարձրագույն կրթություն ունեն:

● Գրադարանն ունի տասը հազար գիրք, հատուկ ֆիլմադարան, որը կոչված է սովորողներին լրիվ ապահովելու գործնական ու տեսական պարապմունքների վերաբերյալ ժապավեններով:

● Սկսած 1966 թվականից ուսումնարանը մասնակցում է ՍՍՀՄ ԺՏՆՑ-ի տաղավարների աշխատանքին: Ցուցադրված ինքնատիպ մոդելների, սարքերի, հարմարանքների, ուսումնական աշխատանքը գերազանց կազմակերպելու համար արժանացել է առաջին, երկրորդ և երրորդ կարգի դիպլոմների, իսկ 125 աշխատողներ ու սովորողներ արժանացել են ոսկե, արծաթե, բրոնզե և «ԺՏՆՑ-ի պատանի մասնակից» մեդալների:

# ՔՆՆՈՒՄ ԵՎ ԳՆԱՀԱՏՈՒՄ ԵՆ ԱՎՏՈՄԱՏ ՍԱՐՔԵՐԸ

Դասասենյակները 9-րդ ուսումնարանում ըստ էության կաբինետներ են՝ տաս-տասներկու կաբինետ, որոնց մասին այցելուները բարի նախանձի տողեր են թողել տպավորությունների մատյանում:

Ծրագրված ուսուցման և մի շարք այլ կաբինետներում տեղադրված են էկրաններ, ավտոմատ սարքեր, որոնք ուսուցչին հնարավորություն են տալիս դասարանի ցանկացած կետից «կախարդական փայտիկի» միջոցով էկրանի վրա ցուցադրել դասի վերաբերյալ գծագրեր, պատկերներ, արտադրական տարբեր պրոցեսներ, բարդ խնդիրներ լուծել կամ, ասենք, փակել ու բացել սենյակի վարագույրները: Եվ այս ամենն այնքան սովորական է, որքան, ասենք, կավիճն ու գրատախտակը դպրոցական սովորական դասասենյակում: Անգամ քննություն հանձնելիս սովորողը նստած է մնում իր տեղը: Պատասխանները հանձնում է նստարանին տեղադրված ավտոմատ սարքին և նույն պահին էլ իմանում է, թե ինչպես պատասխանեց և ինչ գնահատական ստացավ:

Իսկ մարզադահլիճում ապագա մարզիկների համար էկրան է տեղադրված, որտեղ ցուցադրվող ժապավենները օգնում են խորանալու սիրած մարզաձևի գաղտնիքների մեջ: Ուսումնարանն ավարտողներից շատերը մասնագիտություն ձեռք բերելուց բացի, նաև կարգային մարզիկներ են դառնում:

## ԱՅՑԵԼՈՒՆԵՐԻ ՏՊԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԳՐՔԻՑ

Եթե այս հոյակապ շրջանավարտները ապագա բանվորներ են, ապա ես համոզված եմ, որ ՍՍՀՄ-ում կոմունիզմի շինարարությունը ապահովված է:

ՏՈՆԻ ՉԵՅՏԵՐ
*Անգլիայի կոմունիստների «Մորնինգ ստար» թերթի գլխավոր խմբագիր*



# ՈՒՍՈՒՄՆԱՐԱՆԸ ՄԱՄՈՒԼԻ ԷՋԵՐՈՒՄ

Գլխավոր մասնաշենքի նույն՝ երկրորդ հարկում փակցված է ցուցափեղկ՝ «Ուսումնարանը մամուլի էջերում»:

Գրեթե բոլոր կենտրոնական և տեղական թերթերն ու ամսագրերը գրել են ուսումնարանի մասին: Ուսումնարանն էլ, ասես, պարտքի տակ չի մընում, իր հերթին ստանում է գրեթե բոլոր տեղական և կենտրոնական թերթերն ու ամսագրերը: Դրանցից օգտվելու լավագույն պայմաններն են ստեղծված ուսումնարանի գրադարան-ընթերցարանում: Ահա և մեկ այլ ցուցափեղկ, որը տեղեկացնում է, թե ինչ գրականություն, թերթեր ու ամսագրեր է ստանում գրադարանը:

Այս նույն մասնաշենքում է գտնըվում նաև վարսավիրանոցը, որն անվըճար է և սովորողներին ազատում է սափրվելու կամ մազերը հարդարելու համար ավելորդ ժամանակ վատնել դրսում:

## ԱՅՑԵԼՈՒՆԵՐԻ ՏՊԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԳԻՐՔԻՑ

Մենք հիացած ենք ձեր սաների ոսկե ձեռքերով: Ամեն ինչ չափազանց գրավիչ ու ինքնատիպ է արված:

*Զբոսաշրջիկների խումբ, Լիտվա*

## ԹՎԵՐ, ՓԱՍՏԵՐ

● Ուսումնարանում գործում են շուրջ երկու տասնյակ տեխնիկական և գեղարվեստական ինքնագործունեության խմբակներ, ինտերնացիոնալ բարեկամության ու հետաքրքիր հանդիպումների ակումբներ։

● Մարզական խմբակներում պատրաստվել են սպորտի տասնյակ վարպետներ, հարյուրավոր կարգային մարզիկներ, մարզական դատավորներ, գրեթե բոլոր սովորողները հանձնել են ՊԱՊ համալիրի նորմաները։

● Նորարարներն ու գյուտարարները արտադրությանը տարեկան ավելի քան երեք հարյուր հազար ռուբլու պայմանական օգուտ տվող առաջարկներով են հանդես եկել։



## ՈՒՍՈՒՄՆԱՐԱՆԻ ՊԱՐԳԵՎՆԵՐԸ

ՀամԼԿԵՄ Կենտկոմի առաջին քարտուղար Պաստուխովը ՀամԼԿԵՄ 18-րդ համագումարում արտասանած իր ճառում բարձր գնահատական տվեց № 9 ուսումնարանին. «Այստեղ 630 սովորողների մեջ չկա ոչ մի ետ մնացող։ Յուրաքանչյուր երկրորդ սովորողին տրվում է բարձր որակավորում։ Յուրաքանչյուր հինգերորդը պարգևատրվել է ԺՏՆՑ-ի մեդալով... Ուսումնարանը բազային ձեռնարկության՝ էլեկտրալամպերի գործարանի աշխա-




## ԱՌԱՋԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՐԿՂԻԿԸ

Եթե, ասենք, սովորողը պահանջ կամ առաջարկ ունի, ապա դրա համար հարկ չկա, որ դիմի որևէ մեկին. հարկավոր է միայն, որ այդ մասին գրի ու գցի գլխավոր մասնաշենքի երկրորդ հարկում փակցված արկղիկը։ Հետևյալ օրը պատասխանը կփակցվի արկղի կողքին։ Ահա այն հարցերն ու պատասխանները, որ դպրոց այցելելու օրը մենք այնտեղ կարդացինք. «Խնդրվում է ուսումնարանի բակում տեղադրել ավտոմատ հեռախոս», «Կուզենայինք, որ մարզադահլիճում սառը ջրի ծորակ տեղադրվեր»։ Պատասխանները՝ «Առաջարկն ընդունված է և միջոցներ են ձեռնարկված», «Կտեղադրվեն սառը և տաք ջրի ծորակներ»։ Ոչ մի կասկած, որ դիրեկցիայի խոստումը շուտով գործի է վերածվում։

տանքային կոլեկտիվի միջուկն է... ամենագլխավոր արտադրամասը...»

Եվ հենց համագումարի ժամանակ ուսումնարանի ԼԿԵՄ կոմիտեի առաջին քարտուղարին հանձնվեց ՀամԼԿԵՄ Կենտկոմի կողմից առաջին անգամ սահմանված «Պրոֆտեխուսումնարանների լավագույն կոմերիտական կազմակերպությանը» փոխանցիկ կարմիր դրոշը։

Ուսումնարանը տասնութ տարեկան է։ Այսինքն այնքան, որքան այժմ այնտեղ սովորողների տարիքն է։

Ուսումնարանի սաները մասնակցություն են ունեցել մասնաշենքերի ու թանգարանի կառուցմանը։ Վոլեյբոլի, բասկետբոլի ու մարզական մյուս խաղահրապարակները, ինչպես և քսանհինգ մետր երկարությամբ ջրավազանը կառուցվել են բացառապես սաների ձեռքերով։

Ուսումնարանը 1977 թ. քաղաքի մարզական համալիրների ստուգատես մրցույթում առաջնությունը զիջեց միայն «Հրազդան» համալիրին, գրավելով երկրորդ տեղը։

Ձեռք բերած հաջողությունների ու սոցիալիստական մրցության մեջ հաղթող ճանաչվելու համար ուսումնարանն արժանացել է.

Հայաստանի լենինյան կոմերիտմիության դափնեկրի կոչման, պարգևատրվել է ՀԿԿ Կենտկոմի, ՀՍՍՀ Գերագույն սովետի Նախագահության, ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԽ-ի հոբելյանական պատվոգրով։

1978 թվականին ուսումնարանը ՍՍՀՄ 7000 ուսումնարանների և հիմնարկ-ձեռնարկությունների սոցմրցությունում հաղթող ճանաչվեց և արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին։

Հանրապետության առաջին ուսումնական հաստատությունն էր, որ 1979 թվականին արժանացավ Համամիութենական լենինյան կոմերիտմիության դափնեկրի կոչման։

# ՈՒԶՈ՞ՒՄ ԵՔ ԶՐՈՒՑԵԼ ՌՈԲՈՏԻ ՀԵՏ

Այս յուրատեսակ ցուցահանդեսթանգարանում ցուցադրվում են հանրապետության մոտ հարյուր պրոֆտեխնիկական ուսումնարանների սաների աշխատանքները. մանրակերտ հաստոցներ, տրակտորներ, գյուղատնտեսական սարքավորումներ, ինչպես



նաև հաշվիչ մեքենաներ, հեռուստատեսային բարդ սարքավորումներ, երկու ռոբոտ, որոնցից մեկը պատրաստել են Երևանի № 11 ուսումնարանի սաները։ Այս ռոբոտը, որը ցուցադրվել է Մոսկվայում, Բեռլինում, Պրագայում, կարողանում է ոչ միայն խոսել, այլև պարել։ Մյուսը, որի հեղինակը Սևան քաղաքի № 1 ուսումնարանի սաներն են, պատասխանում է տրված հարցերին։ Համոզվելու համար այցելեցեք ցուցահանդես, զրուցեք ռոբոտի հետ։

Ցուցահանդես-թանգարանի երկրորդ հարկը տրամադրված է մեր հանրապետության գեղարվեստական-տեխնիկական ուսումնարաններին։



Այստեղ մնում է զարմանալ այն վարպետության վրա, որ ձեռք են բերում հիշյալ ուսումնարանների սաները ընդամենը երկու տարում: Հայ ժողովրդի դարավոր ավանդական արհեստները՝ արծաթագործությունը, խեցեգործությունը, փայտափորագրությունը, ասեղնագործությունը, իրենց կյանքն են շարունակում Երևանի №№ 8, 12, 15, 42 և Լենինականի № 10 ուսումնարաններում:

Ցուցահանդես-թանգարանի պատին հանրապետության ուսումնարանների երբեմնի սաների դիմանկարների շարքում փակցված են ՍՍՀՄ ժող. արտիստուհի Տաթևիկ Սազանդարյանի, բանաստեղծ Հովհ. Շիրազի, միջազգային ճանաչման հասած բոնցքամարտիկներ Վլադիմիր Ենգիբարյանի, Դավիթ Թորոսյանի, Սուրեն Ղազարյանի, երիտասարդների աշխարհի չեմպիոն Աշոտ Ասլանյանի դիմանկարները: Ահա մի խոսուն վկայություն ևս, որ պրոֆտեխնիկական ուսումնարանները չեն խոչընդոտում, այլ օգնում են պատանուն բնության պարգևած իր ընդունակություններին համապատասխան գտնելու կյանքում իր անփոխարինելի տեղը:

Այս շատ հետաքրքիր ու յուրօրինակ ցուցահանդես-թանգարանը հիմնադրվել է 1962-ին, պրոֆտեխկրթության կոմիտեի նախագահ Սուրեն Միքայելյանի նախաձեռնությամբ:

Կ. ՍՄԲԱՏՅԱՆ

# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ

ՍԵՐՈ ԽԱՆԶԱԴՅԱՆ

## ԹԱԳԱՎՈՐԻ «ԲԱՐՈՒԹՅՈՒՆԸ»

Կար-չկար, վաղեմի ժամանակներում մի թագավոր կար մեր երկրում: Դե, թագավոր է, թագավորն էլ է պակասություններ ունենում: Ո՞վ է ասում, թե չի ունենում: Ունենում է:

Էս թագավորն իր պալատում շատ նախարարներ ուներ: Դրանցից մեկն էլ Մեծ նախարար Աղվեսն էր: Ծքեղ տղամարդ էր այս Մեծ նախարար Աղվեսը: Բարձրահասակ էր, ձիգ ու պիրկ և երբ կանգնում էր ետևի ոտքերի վրա (իսկ նա ետևի ոտքերի վրա կանգնում էր միայն թագավորի առջև), ապա ինքն ավելի բարձր էր երևում, քան թագավորը: Մեծ նախարար Աղվեսը թագավորի առջև մեջքից երկուտակվում էր, գլուխը քաշում ուսերի մեջ, որ ինքը թագավորից վեհ ու բարձր չերևա:

Դու մի ասի մեր թագավորը նաև թլիկ էր, այսինքն խոսելուց կակազում, լեզուն ծամում էր: Նրա մոտ Մեծ նախարար Աղվեսը ևս լեզուն ծամծմում էր,թլիկ ձևանում: Դե, ինչպե՞ս կարելի է, թագավորը թլիկ լինի, ինքը՝ ո՞չ: Մեծ նախարար Աղվեսը իր ձայնը դարձնելով կնկա ձայնի պես ծվծված, նաև թլիկ, ասում էր.

— Թագավո՛ր մեծ, մեր սրտի սյո՛ւն, մեր հացի ա՛ղ, քո լեզվի նման լեզու ինքը մեր տեր Արարիչն անգամ չի ունեցել: Պանծա՜, պանծա՜: Քո լեզուն հստակ է Երուսաղեմի սուրբ զանգի ղողանջի պես: Իմացի՛ր, քո ձայնը բոլորի սրտովն է, բոլորին հաճելի:



Թագավորը ցնծում էր:

Մի ուրիշ պակասություն էլ ուներ թագավորը: Նրա ոտքերը մի քիչ

# ԶՐՈՒՅՑՆԵՐ

ծուռ էին: Եվ որպեսզի այդ ծռությունը չերևա, Մեծ Նախարար Աղվեսը նրան լայնփողք շալվար էր հագցնում ու այդպես մաճ ածում: Ապա ասում էր.

— Օ՜, թագավոր, քո ոտքերի նման պիրկ և ուղիղ ինքը՝ Ալեքսանդր Մեծը չի ունեցել: Երբ դու քայլում ես, աշխարհքը հմայվում է քո քայլվածքով:

Թագավորը շարունակում էր ցնծալ:

Մեծ Նախարար Աղվեսը թագավորին գովաբանում էր հատկապես երբ օտար դեսպաններ էին լինում պալատում: Շռայլ խոսքերով փառաբանում էր նրան.— Մեր թագավորի լեզուն հրաշագեղ է: Մեր թագավորի քայլվածքը առյուծային վեհ է,— ու նման բաներ: Եվ այդ գովասանքներն ավելի էին ընդգծում թագավորի պակասությունները, հիշեցնել տալիս նրա թլիկ ու կաղ լինելը: Դեսպանները թաքուն ծիծաղում էին:

Այդ բանը վերջապես հասկացավ թագավորը: Դե, թագավորներն ուշ են որևէ բան հասկանում, բայց հասկանում են: Եվ ահա մի օր, երբ նորից պետք է դեսպաններ ընդունեին, թագավորն իր Մեծ Նախարար Աղվեսին ասաց.

— Վաղը մենք դեսպան ենք ընդունելու, սիրելի՛ Մեծ Նախարար Աղվես: Հիմա օգոստոս է՝ աշնանամուտ: Տեսնում եմ, որ քո մուշտակ-մորթին սաստիկ քրքրվել է, մազը թափվել: Դա ինձ համար մեծ պակասություն է: Ես ուզում եմ քեզ պարգև տալ, այսինքն քեզ մի նոր ու թանկագին մուշտակ հագցնել:

Այս ասելով, թագավորը հրամայեց Մեծ Նախարար Աղվեսի մորթին վրայից քերթելով հանել և ընտիր սամույրի մուշտակ հագցնել:

Այդպես էլ կատարեցին: Մեծ Նախարար Աղվեսի մորթին հանեցին: Եվ երբ Մեծ Նախարար Աղվեսի կաշին լրիվ քերթեցին, նրա մարմնի մսերը քրքրվեցին, երակները կտրտվեցին շատ տեղեր, և Մեծ Նախարար Աղվեսը սատկեց: Շունչը փչելուց առաջ հազիվ ասաց.

— Մեկն էլ ինձ հարցնի, թե՝ ա՜յ տխմար, ինչո՞ւ էիր ամեն օր ցցվում թագավորի առաջ ու նրա գովքն անում: Մարդի՜կ, ձեզ հեռո՜ւ պահեցեք թագավորներից, ինչ վտանգ գա ձեզ, նրանցից կգա:

## ԱՅՍ ԷԼ ՄԻ ԱՅԼ ԱՂՎԵՍ ՆԱԽԱՐԱՐԻ ՄԱՍԻՆ

Ապրում-չէր ապրում, ասում են, մի թագավոր էր ապրում: Էս թագավորն իրենից էլ էր գոհ, իր բախտից էլ: Կար նաև Մեծ Նախարար Աղվեսը: Սա ևս իրենից էլ էր գոհ, իր բախտից էլ: Ապրում էր, ինչպես մուկը՝ կորեկի կարասում, թագավորի հետ միմյանց ջան էին ասում, ջան լսում:

Մի օր թագավորը Մեծ Նախարար Աղվեսին ասում է.

— Լսի՛ր, բարեկա՛մս, ահա դու իմ թագավորության Մեծ նախարարն ես: Գոհ եմ քեզանից: Բայց ես ուզում եմ թագավոր լինելուց բացի, Մեծ Նախարարի պաշտոնն էլ վերցնեմ իմ ձեռքը, այսինքն՝ և՛ թագավոր լինեմ, և՛ Մեծ



նախարար: Իսկ դու կլինես իմ տեղապահը և կապրենք, կվայելենք առաջվա նման: Ի՞նչ կասես:

— Էդ չեղավ,— առարկում է Մեծ նախարար Աղվեսը:— Ախր Մեծ նախարար լինելն ինչի՞դ է պետք, թագավորն ապրած: Չէ՞ որ ամեն ինչ քոնն է, աշխարհը բռանդ մեջ հավաքած՝ ինչ ուզում, այնպես էլ անում ես: Եթե Մեծ նախարար դառնաս, քեզ կծանրաբեռնես, առողջությանդ համար էլ լավ չէ, անքուն կմնաս, ախորժակդ առաջվա պես չի լինի: Դու մնա քո տեղը՝ քո թագավորական գահին, թագավոր մնա, ես էլ մնամ իմ տեղը՝ Մեծ նախարար: Իզուր տեղը հոգսի բեռ մի՛ վերցրու քեզ վրա:

Թագավորը մտածում-մտածում է, ասում.

— Լավ, համաձայն եմ: Խելոք բան ես ասում:

Դու մի ասի էս թագավորս դարմանի տակով գնացող ջուր է: Մի երկու շաբաթ հետո հրավիրում է Մեծ նախարար Աղվեսին, ասում.

— Բարեկա՛մս, տեսնում եմ, որ շատ ես հոգնել-մաշվել: Արի՛ քեզ մի երկու ամսով ուղարկեմ հանգստի: Կգընաս, մի լավ կդինջանաս:

— Շատ գոհ եմ ու շնորհակալ, ողորմա՛ծ թագավոր,— գլուխ է տալիս Մեծ նախարար Աղվեսը:— Աստված միշտ քեզ իր կողքին պահի:

— Ուրեմն այսպես,— ասում է թագավորը:— Դու գնա իմ տերության որ գյուղն ու քաղաքը կամենում ես, ման արի քեզ համար, հանգստացիր: Ես քեզ հրովարտակ կտամ, որ ամեն գյուղում ու քաղաքում քեզ լավ կերակրեն, առավոտը մի վառեկ տան նախաճաշի համար, կեսօրին մի աքլոր՝ ճաշի համար, իրիկունն էլ մի հավ՝ իրիկնահացի համար: Կեր-խմի՛, քե՛ֆ արա:

Նորից է շատ շնորհակալ լինում Մեծ նախարար Աղվեսը, հրովարտակը վերցնում դնում է ծոցն ու գնում: Իսկ հրովարտակը ահա թե ինչ լեզու ուներ. «Իմ տերության բոլոր կողմերին ու հպատակներին՝ հարավին ու արևմուտքին, արևելքին ու հյուսիսին: Բոլորին, բոլորին, բոլորին... Այս իմ հավատարիմ Մեծ նախարար Աղվեսը ուր մտնի, գյուղ թե քաղաք, այդ գյուղի թե քաղաքի բնակիչները պարտավոր են նրան լավ կերակրել, առավոտը մի վառեկ տան՝ նախաճաշի համար, կեսօրին մի աքլոր՝ ճաշի համար, իրիկունն էլ մի հավ՝ իրիկնահացի համար»:

Մեծ նախարար Աղվեսը գնում է, գնում, կես գիշերին հասնում է մի գյուղ: Շները վրա են տալիս ամեն կողմից: Մեծ նախարար Աղվեսը հանում է թագավորի հրովարտակը, դեմ անում նրանց.

— Է՛յ, է՛յ, ինձ ձեռք չտաք, հա՛: Ես թագավորի հրովարտակով եմ եկել: Դե, շո՛ւտ արեք, ձեր տերերին իմա՛ց տվեք իմ գալու մասին: Թող ձեր տերերը գան ու ինձ ընդունեն, կերակրեն, առավոտը մի վառեկ տան՝ նախաճաշի համար, կեսօրին մի աքլոր՝ ճաշի համար, իրիկունն էլ մի հավ՝ իրիկնահացի համար: Լսեցի՞ք: Դե հա՛, շուտ կատարեցե՛ք թագավորի հրամանը: Ես հոգնած եմ ու քաղցած, ես ուտել եմ ուզում...

Շներն ավելի են գազազում, թափվում նրա վրա և սկսում գզել-գզգզել, քոլոլել: Մեծ նախարար Աղվեսը հազիվ է կարողանում պոկվել նրանցից, փախչել: Շունչը նա է բերում անտառի խորքում ու նստում լաց լինում:

— Ախր քեզ ո՞վ էր ասում հակառակվես քո թագավորին, — ինքն իրեն նախատում է նա:—Ինչո՞ւ հակառակվեցիր ու Մեծ նախարարի պաշտոնը նրան չհանձնեցիր: Կհանձնեիր, դու էլ իր տեղապահը կլինեիր ու կշարունակեիր ապրել առոք-փառոք: Հիմի համ խմորից զրկվեցիր, համ հացից:

Այսպես երկար լաց եղավ Մեծ նախարար Աղվեսն ու մեռավ:

# ՄԵՂԱՎՈՐԸ ՋԻՆ Է

Կային-չկային, իրար ծանոթ երկու մարդ կային: Էս իրար ծանոթներից մեկը սարի գյուղում էր ապրում, մյուսը՝ ձորի: Ձորի գյուղացին սարի գյուղացուն ասում էր.

— Է՛յ, ա՛յ եղբայր, թե իմանաս ի՞նչ այգի ունեմ, ի՞նչ պտուղներ, բերանիդ ջրերը կգնան: Այգումս մեղրի գույնի և մեղրի պես քաղցր խաղող կա: Թուզ ունեմ, որ թե մի հատ ուտես, քաղցրությունից պռոշներդ իրար կկպչեն ու չես կարող բաց անել: Հապա տա՞նձը, մեկը մի կուլայի չափ, ուղղակի խնոցու կարագ: Լավ նուռ էլ ունեմ: Գիտե՞ս նուռը ոչխարի խորովածի հետ անընման է՝ մուրազ է, մուրա՞զ: Այնպիսի սերկևիլ ունեմ, որ մարդ հենց միայն հոտից կկշտանա: Մի օր քեզ համար պիտի մի ձիաբեռ միրգ բերեմ:

— Դու ողջ լինես,— ասում էր սարի գյուղացին:— Դե ես էլ էն տեսակ պանիր եմ պատրաստում, որ հոտը մի օրվա ճանապարհի ծերից կզգաս, երբ ուտում ես, հոգիդ փառավորվում է: Բա մեր գոմշի մածո՞ւնը. էնքան թանձր է, որ դանակով կտրի, դանակով էլ կեր, բա կովիս արաժա՞նը, բա ոչխարի խորովա՞ծը, բա մեր մե՞ղրը: Էլ ի՞նչ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ



ասեմ, մի օր կգաս, ինքդ քո աչքով կտեսնես, քո բերանով կճաշակես:

Եվ ահա մի օր ձորի գյուղացին գնում է սարի գյուղը՝ իր ճանաչ-ծանոթին հյուր: Գնում է ձիու վրա առոք-փառոք նստած: Մոտենում է ծանոթի տանը, բակից կանչում.

— Ա՜յ ախպեր, դո՛ւրս եկ, եկե՛լ եմ:

Սարի գյուղացին դուրս է գալիս պատշգամբ:

— Վա՜յ, ա՜յ ախպեր, եկե՞լ ես: Դե համեցե՛ք, համեցե՛ք:

Ձորի գյուղացին ասում է.

— Գիտե՞ս ինչ, ա՛յ ախպեր: Շատ եմ նեղացել էս իմ ձիու վրա, քիչ է մնում տամ սպանեմ:

— Ինչի՞:

— Ախր էս անիրավ, անաստված ձիս... Առավոտ կանուխ մտա բաղը, երկու մեծ-մեծ քթոց լցրի մրգով՝ է՜լ նուռ, է՜լ թուզ, է՜լ տանձ ու սերկևիլ, վրան էլ՝ խաղող: Է՜ն տեսակ խաղող, որ հատիկի մեջ պատկերդ երևում է: Լցրի՝ ամեն կողովի մեջ մի հինգ-վեց փթի չափ: Լցրի, որ բերեմ քեզ համար: Էս սատկած ձիս քաշեցի, որ միրգը բեռնեմ վրան, բերեմ, էս անիծվածս չորս ոտքը մեխեց իրար, թե բեռ չեմ վերցնի, տեղիցս չեմ շարժվի: Ինչ արի-չարի, էս անհասկացող ձիս չմոտեցավ բեռանը, չթողեց, որ պտուղը բեռնեմ իր մեջքին, բերեմ քեզ համար: Բա էսպես էլ խայտառակություն կլինի՞, որ էս ձիս բերեց իմ գլխին, քո առաջ սևերես թողեց: Ես էլ ահա, առանց բեռան, դատարկ եմ եկել տունդ:

— Վնաս չունի,— ասաց սարի գյուղացին:— Շա՜տ էլ դարդ մի անի, ա՜յ ախպեր: Ի՞նչ կա որ, ոնց որ դատարկ եկել ես, էնպես էլ դատարկ ետ կգնաս: Ձիդ առանց բեռան է եկել, առանց բեռան էլ ետ կգնա:

Երկուսն էլ իրար հասկացան ու քըր-քըջացին ժպտերին հատուկ հաճույ-քով:

## Գիտե՞ք որ...

● Լուն, որի չափերը 1—2 միլիմետրից չեն անցնում, կարող է համարվել թռիչքի չեմպիոն: Նա մի թռիչքով կարող է կտրել իր չափից 100 անգամ ավելի տարածություն: Եթե մարդը այդպես թռչել կարողանար, նա հեշտությամբ կցատկեր բարձրաբերձ շենքերի վրայով:

Քաղցած լուն կեր ճարելու համար կարող է թռչել 70 ժամից ավելի, մի ժամում կատարելով 600-ական թռիչք:

● 1974 թվականի աշնանը, Ավստրալիայում, ծովափից 500 կմ հեռու, երկնքից ձկներ թափվեցին: Ձկների մեծությունը 5—7 սանտիմետր էր:

Օդերևութաբանները գտան, որ այդ ժամանակ ծովի վրա տրոպիկական փոթորիկ է բարձրացել: Հավանական է, որ այդ փոթորիկը «ծծել» է ծովի մակերեսի ջրերը ձկների հետ, բարձրացրել է վեր և ցած է թափել ծովափից 500 կմ հեռու:

● Ծովի խորքերում, որտեղ անվերջ գիշեր է, ապրում են ձկնորս կոչվող ձկները: Նրանք ունեն հատուկ երկար կարթեր, որոնց ծայրերը լույս են արձակում: Ձկնիկները մոտենում են լույս արձակող կետին և ընկնում են ձկնորսի երախը: Որսորդությամբ զբաղվում են միայն էգ ձկները, իսկ արուները պարազիտ կյանք են վարում:

● Ջրային կրիաների առանձին տեսակներ կարող են տանել մինչև վեց տարվա սովածություն: Եթե հունական կրիայի գլուխը կտրեն, սիրտը կշարունակի բաբախել 14 օր ևս, իսկ կտրած գլուխը կես ժամ կարող է պահպանել կծելու ընդունակությունը:

Լինում են կրիաներ լուցկու տուփի մեծությամբ, լինում են և այնպիսիք, որոնց քաշը մեկ տոննայից ավելի է:

# ԱՐՀԵՍՏԱՆՈՑՈՒՄ

*ՎԻԿՏՈՐ ԿՈԶԵՎՍԿԻ*

**Հագած ճերմակ, փրչոտ մուշտակ,**
**Մեր այգին է քնած խաղաղ,**
**Իսկ դպրոցում՝ թի՛կ-թա՛կ, թի՛կ-թա՛կ,**
**Բույն ենք շինում հարմար ու տաք,**
**Սարյակաշեն մի ողջ քաղաք:**

**Գարնան շունչն է փռված չորս դին,**
**Որ դասարան ենք մենք բերել,**
**Խեժի բույրը արևային**
**Արհեստանոցն է հեղեղել:**

**Եվ ծառերը՝ այգում սառած,**
**Բքի միջից ու ցրտերի,**
**Ասես լսում են տուն դարձած**
**Երգը նորեկ թռչունների:**

**Ձմեռ է, բայց ասես լինի**
**Ուրախադեմ գարնան մի օր,**
**Թռչունները բացած հանդես՝**
**Նստելու են բներին նոր:**

**Դազգահի մոտ այդպես շիտակ,**
**Գոգնոց կապած կանգնել եմ ես,**
**Եվ ռանդան է իմ ձեռքի տակ**
**Ուրախ երգում սարյակի պես...**

*Թարգմ. Է.Դ. ԱՎԱԳՅԱՆԻ*



*Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ*

Դպրոցականի «Կարմիր գիրք»



# Գ Ա Ն Գ Ա

**Թվում է, թե սարսափազդու չեն կարող լինել սովորական թիթեռները: Չէ՞ որ դրանք միայն զմայլանքի ու հիացմունքի արժանի էակներ են: Սակայն պարզվում է, որ սարսափազդու թիթեռներ էլ կան:**

**Մեր բնաշխարհում հանդիպում է մի շատ խոշոր թիթեռ, որի թևերի բացվածքը հասնում է 12—14 սմ-ի: Առաջնաթևերը մուգ գորշավուն են, որոնց երկարությամբ անցնում է երկատամնավոր դեղնաժանգավուն շերտ, իսկ միջնամասում սպիտակավուն բծեր կան: Հետևի զույգ թևերը դեղնագույն են, երկու սև երկայնական շերտերով: Կուրծքը սևավուն է, պատած մուգ մազիկներով: Փորը հաստ է, սև հատվածներով և կապտավուն միջնաշերտով: Ամեն ինչ այնպես է, ինչպես հազարավոր այլ թիթեռների մոտ: Սակայն այս թիթեռն ունի երկու խիստ տարբերիչ հատկանիշ:**

**Նրա մեջքին կա մահվան նշան՝ գանգ հիշեցնող սև խալ, որի տակ երևում են երկու խաչված ոսկորները: Այս չարագուշակ նշանն է եղել պատճառը, որ եվրոպական մի շարք երկրներում այս թիթեռին անվանել են «Մե-**



# ԹԻԹԵՌ

ռած գլուխ»: Հայ մասնագիտական գրականության մեջ անվանվում է «Գանգաթիթեռ»:

Այս թիթեռի նկարագրությունը առաջին անգամ տվել է հռչակավոր բնագետ Կառլ Լիննեյը: Հաշվի առնելով վերոհիշյալ չարագուշակ նշանը, որը, ինչպես ասացինք, այս թիթեռը կրում է իր մեջքի վրա, Լիննեյը տվել է այնպիսի չարագուշակ լատինական անվանում, որը ետ չի մնում թիթեռի արտաքին տեսքից: Ախերոնտի ատրոպոս: «Ախերոն» ավանդույթի համաձայն կոչվում էր այն առասպելական գետը, որն իբր հոսում էր հանդերձյալ աշխարհի մուտքի մոտով և որի վրայով Քարոնը իր մակույկով դատապարտվածների հոգիները դժոխք էր տանում: Իսկ «Ատրոպոս» կոչվում էր ճակատագրի աստվածուհին:

Սովորական թիթեռներից գանգաթիթեռը տարբերվում է նաև նրանով, որ հայտնի է որպես ճչացող թիթեռ: Ինչպես թռիչքի ժամանակ, այնպես էլ թռչելու և ափի մեջ պահելու դեպքում տարօրինակ ճիչ է արձակում: Հետաքրքիր է, որ ճիչ է արձակում նաև հարսնյակը՝ իր զարգացման վերջին շրջանում, երբ նրա միջից պետք է դուրս թռչի թիթեռը: Շատերը այդ ճիչը նմանեցնում են գետնափորիկի, ուրիշները՝ բզզան բզեզի ձայնի: Գիտնականները կարծում են, որ այդ ճչոցը թիթեռի խիստ գրգռվածության արդյունք է: Գանգաթիթեռը ճչում է թե՛ հանգիստ թռիչքի ժամանակ և թե՛ վըտանգի պահին: Նա առավել ուժեղ ու տագնապալի է ճչում, երբ դրվում է տուփի մեջ, իսկ երբ սեղմում են կուրծքը՝ խելահեղ ճիչ է արձակում: Ոչ պակաս սարսափազդու է նաև այն հանգամանքը, որ այս տարօրինակ ու առեղծվածային թիթեռը ճչում է նաև գլխատված ժամանակ:

Հայաստանում գանգաթիթեռը հանդիպում է հյուսիսային անտառապատ շրջաններում, ինչպես նաև Զանգեզուրում, Արարատյան դաշտում, Ծաղկաձորում: Մեր հանրապետությունից դուրս հայտնի է Անդրկովկասի այլ շրջաններում, Եվրոպայի հարավում, երբեմն նաև հյուսիսային շրջաններում, Աֆրիկայում, Սիրիայում, Պաղեստինում:

Իր սարսափազդու տեսքի և չարագուշակ ճչոցի պատճառով գանգաթիթեռը նախկինում ամենուրեք ոչնչացվել է: Որսացել են նաև կոլեկցիոներները, որպես հազվագյուտ և հետաքրքիր թիթեռ: Ներկայումս էլ այն հաճախ է որսվում: Դրա հետևանքով գանգաթիթեռի քանակը օրեցօր նվազում է և որոշ վայրերում, այդ թվում նաև Հայաստանում, այն անհետացման եզրին է գտնվում:

Սակայն որպես խիստ հազվագյուտ և հետաքրքիր միջատ, որն իսկապես հանդիսանում է բնության հրաշալիքներից մեկը, գանգաթիթեռը պահպանության խիստ կարիք ունի: Մեր հանրապետության բոլոր պատանի բնասերները պետք է լավ ճանաչեն և պահպանության տակ վերցնեն առաջին հայացքից խիստ չարագուշակ, սակայն, իրականում ուշադրության արժանի և ճանաչողական մեծ նշանակություն ունեցող այս հազվագյուտ թիթեռը:

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

*կենսաբանության դոկտոր, պրոֆեսոր*



*ՊԱՎԵԼ ՍԱՖՅԱՆ*
*ՀԿԿ Սովետական շրջկոմի առաջին քարտուղար*

նել, և այն, որ օրեցօր ավելանում է դրանց թիվը, մայրուղիների երկու կողմերում վերընձյուղվում են նոր ծառեր, նրանց նախաձեռնության արդյունքն է: №148 դըպրոցի բարձր դասարանցիներից կազմված աշակերտական-շինարարական չորս ջոկատ մասնակցում է շրջանի №1 մանկապատանեկան մարզադպրոցի շինարարությանը: Գեղեցիկ արարքի ուսանելի օրինակ է տվել №59 դըպրոցի 10-րդ դասարանի աշակերտուհի Ժաննա Պետրոսյանը: Անցած ուսումնական տարում գերազանց առաջադիմություն ունեցող աշակերտուհին ստանձնեց 5—7-րդ դասարանցիներ Արմեն Կարապետյանի, Ավագ Ավագյանի, Արտակ Վարդանյանի, Հարություն Խամյանի շեֆությունը, օգնեց, և նրանք առաջադիմեցին ռուսաց և անգլերեն լեզուներում:

Բնակիչների, դպրոցականների և աշխատավորության ջանքերով գեղեցկանում, գրավիչ տեսք է ստանում շրջանը: Տնական չարչարանքների, որոնումների գնով նրանց հաջողվեց գեղեցիկ պուրակներ ըստեղծել երբեմնի քարակույտերի մեջ: Ավելին: Այգիներից ու պուրակներից շատերում տեղադրված են հնագիտական շատ արժեքավոր կոթողներ, ստեղծվել են «Բնական քարատեսակների», «Ժողովրդական կենցաղում օգտագործված քարե իրերի», «Հընագույն հավատալիքների հետ կապված արձանների», «Ժայռապատկերների», «Հայկական պատմական հուշարձանների» պուրակներ... Այդ ամենն այնպես են տեղավորված անցուղիներում, այգիներում ու պուրակներում, որպեսզի մարդը գեղագիտական հաճույք ստանալու հետ՝ նաև իրեն զգա բնության գրկում:

Շրջանի բնակչությունը (վերջին մարդահամարի տվյալներով այն հասել է 209 հազարի) մեծ օգնություն է ցույց տալիս բարեկարգման բոլոր հարցերում, գնահատում է իր համար արված լավ գործը: Շատ ջերմ ընդունելություն գտավ կանգառներում քարե

# ԳԵՂԵՑԻԿԸ ՀԵՇՏՈՒԹՅԱՄԲ ՉԻ ՍՏԵՂԾՎՈՒՄ

«Մարդու պատանեկությունը գեղեցիկ ու շքեղ գարուն է,— ասել է Բելինսկին,— ուժերի գործածության եռուն շրջան: Դա կյանքում լինում է միայն մեկ անգամ և այլևս երբեք չի վերադառնում»: Ուրեմն պետք է ամեն մեկն աշխատի, որ իր կյանքի գարունը ծաղկառատ լինի:

Մեր շրջանի պատանիներն այս առումով տառացիորեն շատ բան են անում: Գարնան և աշնան ամիսներին հազարավոր աշակերտներ նոր կանաչ գոտիներ են ստեղծում և հոգ են տանում ծառերին, թփերին ու ծաղիկներին: Նրանք որոշել են նաև նոր այգիներ, պուրակներ հիմ-

զարդանախշ նստարան-
ներ տեղադրելը: Ընդհա-
նուր կանաչ տարծու-
թյունների մեջ յուրովի
են աչքի ընկնում նաև
հին կարասները, Գայի
անվան մայրուղու մո-
տերքում տեղադրված
ժամանակակից քանդա-
կագործության լավա-
գույն նմուշները...

Ինչ խոսք, որ այս ա-
մենը արվում է դպրոցա-
կանների, ծառայողնե-
րի, ամբողջ աշխատավո-
րության ուժերով և նը-
րա:նց համար:

Բայց ամե՞նքն են բա-
րոյական այնպիսի բարձ-
րության վրա կանգնած,
որ հասկանան և գնա-
հատեն այդ: Բոլորիս հի-
շողության մեջ դեռ թարմ
է շրջանի ղեկավարների
ու աշխատավորության
համար ծանր ու տխուր
օրը՝ 1977 թվականի աշ-
նանը, երբ մի խումբ
բարձր դասարանցիներ
վայրագորեն ջարդել էին
Մյասնիկյան պողոտայի
163 տնկիները, որոնք
այսօր փարթամ ծառեր
դարձած կլինեին: Կամ
ո՞ւմ չէր հիացնում փո-
ղոցներում ու պուրակնե-
րում տեղադրված բազմ-
երանգ «Պուշկինյան
լապտերները», որոնք
երեկոները գրավիչ
տեսք էին հաղորդում
շրջապատին: Այդ լապ-
տերները տեղադրելու
վրա ծախսվել էր 40 հա-
զար ռուբլի, որպեսզի
մարդիկ գեղագիտական
բավականություն ստա-
նային դրանց մեղմ լու-
սախաղի տակ զբոսնե-
լիս: Այսօր այդ գեղեց-
կությունից մետաղե գորշ
կմախքներ են մնացել...
Դրանց հեղինակները
նույնպես դպրոցական-
ներն են: Արդյո՞ք սա չի
խոսում նրանց հոգու
աղքատության, գեղեցի-
կը ըմբռնելու անկարո-
ղության, ոչ ճիշտ դաս-
տիարակության մասին...
Ավերելը հեշտ է, բարի
գործ կատարելն է դըժ-
վար: Վատ արարքները
եզակի են, բայց նրանք
խոր ցավ ու վիրավո-
րանք են պատճառում
շրջապատի մարդկանց:

# ԳԵՂԵՑԻԿԸ ՔՈ ԿՅԱՆՔՈՒՄ

Վերոհիշյալ խորագրով հոդվածաշարի հեղինակներ են լինելու հանրապետության անվանի գրողներ, պետական ու կուսակցական աշխատողներ, գիտության ու մշակույթի գործիչներ:
Ծանկալի է, որ մեր ընթերցողները նույնպես մասնակցեն սկսված խոսակցությանը:



«Կյանքի իմաստը գե-
ղեցկության ու նպատակ-
ների ձգտելու մեջ է, և
կյանքի յուրաքանչյուր
վայրկյանը պետք է ու-
նենա իր վսեմ նպատա-
կը,— ասել է Մաքսիմ
Գորկին: Վա՜յ նրան, ով
ընդունակ չի ըմբռնելու
այս խոսքերի էությունը:

# ՌՈՒՍՏԱՄ ԱՀՄԵԴՈՎԻ ՀԱՆԵԼՈՒԿԸ

Տարեկիցները Ռուստամից շատ բոյովացան, և ոչ ոք չէր կարծում, թե Ռուստամին կհաջողվի հասնել նրանց։ Իսկ Ռուստամը շատ էր ուզում բոյովանալ։ Տանը, իր մահճակալի վերևը նա փակցրեց պարտավորագիր. «Պարտավորվում եմ այս տարի բոյովանալ հինգ սանտիմետր։ Երդվում եմ անել այդ, ինչպես էլ լինի։ Ռ. Ահմեդով»։

Ամեն օր նա ձկան յուղ էր խմում և շատ կանաչեղեն ուտում։ Հատուկ վարժություններ մշակեց։ Բարձրանում էր մարմնամարզական պատին, կախվում, ձեռքերով կառչած վերին ձողին։ Ծանաչված մարզիչ Վիկտոր Ալեքսեևիչ Լոնսկոյին, որը նաև իր մարզիչն էր, նա ասում էր. «Դուք տեսե՞լ եք տանտիկիններն ինչպես են վարվում խմորի հետ։ Նրանք խմորի գունդը առնում են ափերի մեջ և գլորելով երկարացնում։ Նույնն եմ անում նաև ես. պառկում եմ թեք լանջին ու գլորվում...»

Մի տարում նա բոյովացավ հինգ սանտիմետր։ Հետևյալ տարին ինքն իրեն պարտավորեցրեց անել նույնը, և դարձյալ բոյովացավ հինգ սանտիմետր... Ռուստամը դարձավ փայլուն մարզիկ, վարպետ, պաշտպանեց ՍՍՀՄ-ի հավաքականի պատիվը Մեխիկոյում կայացած օլիմպիական խաղերում։

Այժմ այն մասին, թե ինչպիսի հատուկ վարժություններ պետք է անել բոյ քաշելու համար։ Ո՛չ մի։ Եթե այդպիսի վարժություններ լինեին, ամեն ինչ պարզ, հեշտ ու հանգիստ կլիներ։ Ուզում ես բոյ քաշե՞լ, կատարիր այդ վարժությունները և բոյ կքաշես։ Բայց բանն այն է, որ գիտնականները դեռևս չեն կարող հարցին տալ ճշգրիտ, գիտական հիմնավորում։ Ի՞նչն է մարդու հասակի վրա ներգործում՝ ժառանգականությո՞ւնը, սնո՞ւնդը, կլիմա՞ն, թե՞ այդ բոլորը միասին։

Ռուստամը, ճիշտ է, բոյ քաշեց։ Բայց այն վարժությունները, որ կատարում էր նա, կատարում էին Լոնսկոյի բոլոր աշակերտները, իսկ արդյունքի հասավ միայն մեկը։ Դժվար է ասել ինչու։ Դեռևս այդ հանելուկ է։

Բայց այս պատմության մեջ ամենահետաքրքիրը հանելուկը չէ։ Ամենահետաքրքիրը այդ տղայի բնավորությունն է. նա երազում էր բոյ քաշել, որպեսզի սովորի բարձր թռչել։ Եվ երազում էր այնքան բուռն, որ կատարեց, կարելի է ասել, անկարելին։

«Костер»-ից

ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԱՆՄՈՌԱՆԱԼԻ ՕՐ

«Անհաշտություն դասարանում... ինչո՞ւ»

Գարուն էր, չորս կողմ ծաղիկ էր ու կանաչ։ Կանաչին էին տալիս ձորի այգիները, բլրալանջերը և մեր սիրած խաղատեղերը, ուր հավաքվում էինք երեկոները (ոչ թե փախչում էինք դասից), հատկապես տոն օրերին, խարույկ էինք վառում, երգում, պարում, ուրախանում, ցատկոտում կըրակի վրայով, և ի վերջո երբ մենք էլ, կրակն էլ ուժասպառ էինք լինում, հերթը երգիծանքին էր հասնում։

Մայիսյան մի առավոտ վերցնելով ուսապարկերը, ելանք այսպես ասած «հեռավոր ճամփորդության» (մեր կարծիքով)։

Ճանապարհը սկզբում հարթ էր։ Գնում էինք ուրախ ու հեշտ, զրուցում էինք, ծիծաղում, վազում թիթեռների ետևից, հոտոտում մեկ այս, մեկ այն ծաղկից, հիանում թռչունների գեղգեղանքով ու երկնի լազուրով, որը երբեմն ճեղքելով անցնում էին ինքնաթիռները։

Այսպես քայլելով, հասանք մի փոքր բլրի, որտեղ քիչ հանգստանալուց հետո, ճանապարհը շարունակեցինք սարալանջով դեպի սարի գագաթը։ Բարձրանում էինք հանգիստ, չէինք շտապում։ Ճանապարհին պատահում էր մի հետա-

«Վատ» հայոց լեզվից»

# ՉՍՏԱՑՅԱՆՔ ՊԱՏԱՍԽԱՆԸ

Դասամիջոց էր: Աղջիկներով կանգնած էինք պատուհանի մոտ: Ընկերուհիս պատմում էր իր կարդացած գրքի մասին: Մենք հետաքրքրությամբ լըսում էինք: Այդ ժամանակ մի աղջիկ մոտեցավ և.

— Մեռածի՞ս տեսեք... որ քաղաքավարի չխոսես, ես կխռովեմ: Դու տոշնի պտի լեզվաբան դառնաս:

Ընկերուհիս շփոթվեց, չիմացավ ինչ ասի: Մենք միջամտեցինք, նախատեցինք խանգարողին: Մեզանից մեկն էլ շատ տեղին վրա բերեց.

— Քաղաքավարի չես ուզում խոսել, ապա ինչպե՞ս է, որ քաղաքից եկած նորաձևությունները առաջինն ես ընդօրինակում:

Մենք չստացանք նրա պատասխանը: Հավանաբար նա զգաց իր սխալը և... արագ հեռացավ:

ԿԱՐԻՆԵ ՄԽԻԹԱՐՅԱՆ

*Էջմիածնի շրջ., Այգեկ ավան, 8-րդ դաս.*

# ԱՐՁԱԳԱՆՔՈՒՄ ԵՆ ՏՊԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՆ



քըրքիր, անծանոթ բույս կամ ապառ, հավաքում էինք, մեր աչքից ոչինչ չէր վրիպում, որովհետև ամեն ինչ հետաքրքիր էր: Այսպես զննելով մեր շրջապատն ու դեղաբույսեր հավաքելով, հասանք սարի գագաթը և նստեցինք ճաշելու: Մեր չորս բոլորը ծաղիկ էր, երկինքը՝ լազուր, թըռչունների գեղգեղանք, բոռերի ու պիծակների միալար բզզոց, իսկ ներքևում քչքչում էր առվակը: Հեռվում դեղնին էին տալիս դաշտային ծաղիկների բույլերը, իսկ ձախում կարմրին էին տալիս կակաչների խըմբերը, որոնց մեջ երևում էին ագռավի աչք կոչված կապույտ գույնի փոքրիկ ցողունիկով ծաղիկները: Ներքևի բլուրը ծածկված էր կապտավուն զանգակ կոչված ծաղիկներով, որտեղ երևում էին դարձյալ սև պուտերով կակաչները:

Օրը անցավ ուրախ ու բերկրալից: Տուն վերադարձանք եկած ճանապարհով: Դեռ ճանապարհի կեսը չէինք անցել, երբ երկինքը մռայլվեց, պատվեց սև ամպերով և սկսվեց ուժեղ տեղատարափը, որը վերածվեց կարկուտի: Մեզնից մի քիչ հեռու խոտի դեզ կար: Վազեցինք մտանք դեզի տակ: Այնտեղ մնացինք մինչև կարկուտն ու անձրևը դադարեցին: Նայեցինք և ի՞նչ տեսանք. դիմացի սարերը սպիտակել էին կարկուտից: Մեր առջեվում գոյացել էին ջրափոսեր և առվակներ: Բարեբախտաբար դեղաբույսերի մեր հավաքածուն չէր վնասվել, հաջող տեղ հասցրինք, բույսերի մի մասից պատրաստեցինք հերբարիում, մի մասն էլ պահեցինք տոտրի մեջ:

Չնայած թրջվել էինք, այդ օրը մեզ համար դարձավ մի լավ, անմոռանալի օր, որը այսօր հիշում եմ որպես ապրած գեղեցիկ մի պատմություն:

ՅՈՒՆԻԿ ՇՈՒՇԱՆՅԱՆ

*Կրասնոսելսկի շրջ., գ. Օրջոնիկիձե*



# ՎԵՐՋԱՊԵՍ ԵՍ ԴՊՐՈՑ ԵՄ ԳՆՈՒՄ

ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ

## ՍԵՎՈՒԿ ԱՆՆԱՆ

Դուք կարծում եք մեր դասարանում հենց միայն խանութպանների երես տված զավակնե՞ր էին: Ո՛չ, Դիլիջանի մեծ մասն այն ժամանակ գյուղ էր, մեզ նման հողագործներ էին, անասուններ էին պահում իրենց Անագյունեյի ձմեռանոցում, խոտ էին հնձում Ծաղկութ ուրթում, արածացնում էին Գայլասարի ու Մարանասարի նոսր կաղնուտները և ցորեն էին ցանում Ծեռի հողերում, ուր հիմա մի նոր քաղաք է բարձրացել:

Այդ գյուղացիների երեխաների մեջ կային համեստ, քաշվող և լավ սովորող երեխաներ: Նրանցից մեկը առանձնապես պայծառ հիշատակ է թողել հոգուս մի անկյունում:

Փորքամարմին, սևուկ աղջիկ էր, գնչուհու նման սև ու խռիվ մազերով, սև-սև աչքերով: Աննան բնավորությամբ պարզ էր ու սրտամոտ, և մենք՝ գյուղից եկածներս սիրում ու գնահատում էինք նրան ավելի, քան իր պճնամոլ ընկերուհիներին: Ի՞նչ եմ ասում, նրանք ուղղակի խուսափում էին այդ աղքատ աղջկա հետ ընկերություն անելուց:

Աննայենց խրճիթը մոտ էր դպրոցին, բոլորովին մոտ: Եվ ամեն դասամիջոցի, մինչև մենք խաղում էինք ու հանգստանում, Աննան դուրս էր թռչում դասասենյակից ու մինչև իրենց տուն մի շնչով վազում: Զանգի ձայնը լսելուն պես, մանր տոտիկներով նորից ետ վազում, խռիվ մազերը քամուն տալով և վերջին աշակերտների հետ հևիհև մտնում դասարան:

Իսկ մեծ դասամիջոցին, որ տևում էր կարծեմ կես ժամ, երբ մենք բակի լորենիների տակ նստած՝ մեր աղքատիկ

Սկիզբը՝ № 1-ում:

նախանաշն էինք անում, Աննան դարձյալ իրենց տանն էր:

Հանելուկի նման բան էր, թե այդ աղջիկը ինչո՞ւ է ամեն ընդմիջումի տուն վազում, ի՞նչ կա այնտեղ, հանուն որի զրկվում է թե՛ խաղից, թե՛ հանգստից, թե՛ նախանաշից:

— Ցա՜վը տանեմ ապերիկիս, մենակ մի տվածն է ուտում,— երջանկությունը սև աչքերի մեջ, մի անգամ պատմում էր Համասփյուռ Արզումանյանին՝ լավ ապրող մի հացթուխի աղջկա:

— Ամեն դասամիջոցի դրա՞ համար ես տուն վազում:

— Ինչո՞ւ միայն դրա համար: Մորս օգնում եմ: Իսկ մեծ դասամիջոցին ամեն օր լվացք եմ անում... Ցա՜վը տանեմ ապերիկիս, բա նրա շորերը ես կթողնե՞մ, որ հիվանդ մերս լվանա...

Ես ' մեկ և կես տարի սովորեցի Դիլիջանի դպրոցում և չեմ հիշում մի դասամիջոց, որ Աննան չվազեր տուն՝ մորն օգնելու կամ իր ապերիկին խնամելու:

— Ցա՜վը տանեմ ապերիկիս...

Այնպե՜ս սրտանց էր ասում, այնպես քնքշանքով...

Հետագայում Աննային ես կորցրի, ինչպես և իմ մյուս համադասարանցիներին: Աշխատում էի այլ շրջաններում, և եթե պատահում էր, որ գնում էի ծննդավայրս, կանգ չէի առնում Դիլիջանում, նախ մեքենայով, ապա՝ ոտքով բարձրանում էի իմ սիրած սարերը՝ մանկությանս վայրերը քաշում էին ինձ:

Բայց մի անգամ այնպես եղավ, որ Դիլիջանի փոստի առաջ հանդիպեցի Ասքանազին, զրույցի բռնվեցինք:

— Լսի՛ր, մի սև Աննա ունեինք... հիշո՞ւմ ես, որ ամեն դասամիջոցի վազում էր տուն: Աննան կա՞...

— Սպասի՛ր...

Անցավ փոստի հետևը ու ձայն տըվեց.

— Աննա՜, մի շուտ մո՛տս արի...

Այո՛, հիշում եմ, նրանց տունը փոստի հետևն էր:

Սրտատրոփ սպասում եմ:

Գնչուի խռիվ մազերը քամուն տալով, հասավ մեզ, հարցական նայեց դեմքերիս և առանց ձայն հանելու գրկեց ինձ:

Այնպես զգացվեցի, կարծես տասնամյակներ առաջ կորած քրոջս գտա: Իսկ նա սև աչքերի մեջ արցունքը լճացած, զննում է դեմքս, ուզում է գտնել նախկին նշանները, չի գտնում, բայց հոգով անսխալ կերպով զգում է, որ ես եմ, այն գյուղացի շիլ տղան, որ միշտ հատուկ համակրանքով է վերաբերվել իրեն:

— Անունդ էլ է փոխված, աչքդ էլ, բայց դու նա ես, ես սրտով զգում եմ,— ասում է ու դեմքը հպում կրծքիս:

Ա՜խ, ափսո՜ս սև սաթի նման այն մազերը, որ ճերմակել են... Ափսո՜ս անցած կրակը, որ անսպառ էր այն աղջնակի մեջ՝ իր ապերիկի համար, իր հիվանդ մոր համար:

— Հետո՞, Աննա՛ ջան, ապերիկիդ մեծացրի՞ր...

Երանի այդ հարցը չտայի: Արդեն լճացած արցունքները ցած գլորվեցին թոռոմած այտերով և կամաց ասաց.

— Այո՛, մեծացրի ու ...ու զոհ տվի հայրենիքիս...

Ծանր հրաժեշտից հետո մի պահ ծանր լռություն տիրեց:

— Մի քիչ առաջ գնանք, քո մանկության ընկերներից մեկին էլ տես,— առաջարկեց Ասքանազը:

Կանգ առանք Մատնանց Խաչատուրի տան առաջ: Այո, Համիկենց տունն է, և հուզմունքը համակեց ինձ:

Բայց անտեղի էր հուզմունքս, որովհետև տնից դուրս հրավիրված ճերմակ, փարթամ տիկինը օտարոտի նայեց ինձ և որքան էլ Ասքանազը լեզու թափեց, տիկինը չհիշեց (թե՞ չկամեցավ հիշել) ինձ:

— Ախր մի ժամանակ կողքիդ էր նստում:

Անտարբեր նայում է:

— Անունն էլ ուրիշ էր, Ստեփան Անանյան... գյուղից էր գալիս... տրեխներով...

Տրեխների անունը տալով, կարծում եմ Ասքանազը տակտիկական սխալ գործեց. հենց միայն տրեխներով գոմահոտ հարևան ունենալը պետք է որ Մատինյանների դստեր մեջ տհաճ հուշեր արթնացներ:

# ՄԵՐ ԴԱՍԱՐԱՆԻ ՍՈԽԱԿԸ

Կարոտով եմ հիշում քո երգերը, իմ մանկության ընկերուհի Հրանո՛ւշ Զաքարյան: Ես՝ լեռներում մեծացած մանուկս, կարոտ էի սրտամոտ երգի: Ես, որ շրջապատումս շատ կոպտություն էի տեսել, կարոտում էի այն ամենին, ինչ մեղմ է, սրտամոտ ու մարդկային:

— Հրանո՛ւշ Զաքարյան, հապա մի երգի՛ր սիրահար հովվի երգը,— մեղմությամբ դիմում էր երգի ուսուցիչ պարոն Խաչատրյանը՝ մինչև ուսերը հասնող մազերով մի մարդ:

— Վարժապե՛տ, մրսել եմ, ձայնս կտրվել է...

Իրոք այսօր Հրանուշը վզին մի ճերմակ շոր է փաթաթել: Փաթաթել է, բայց ես գիտեմ, որ տակը թխամորթ է, իսկ վիզը՝ երկար: Դեմքը ցորնագույն է, թշիկների ծայրերը թխակարմիր: Ինքը սլացիկ հասակ ունի, ձայնը զրնգուն է ու երգեցիկ:

— Ես կձայնակցեմ քեզ,— խնդրում է ուսուցիչը:

— Դե լա՛վ, մի՛ կոտրատվիլ,— կոպտում է Համիկի եղբայրը՝ Ամասյա Մատինյանը:

Դրանից մռայլվում է մեր երգչուհին:

Իսկ ես այնպիսի աղերսանքով եմ նայում աղջկան, որ կարծես պարզ ասում եմ. «Դու նրանց հետ գործ չունես... նրանք քեզ չեն հասկանա: Քեզ միայն սարերում ապրած հովիվ մարդը կհասկանա... Իսկ այդ հովիվը ես եմ...»

Նայեց ինձ և ուղղակի լսեց չասածըս խոսքերը: Լսեց իր բարի սրտով: Ու սկսեց, ո՜նց սկսեց.

Հովիվը սարում տխրեց,
Սիրո երգը նվագեց,
Երգը վառ աչերի,
Երգը վարդ այտերի,
Երգը լավ օրերի՜...

Երգում է ու, ո՜վ զարմանք, հայացքն ինձ է ուղղված: Կարծես ամբողջ դասարանը մոռացած՝ միայն ինձ համար է երգում...

Սիրտս թնդաց բերկրանքից:

Բավական դառնությունների հետ էր կապված մեր ուսումը: Արդեն ասել եմ, որ թե՛ անասուններին էինք խնամում, թե՛ գյուղից Դիլիջան վազում ինչպիսի եղանակ էլ որ լիներ՝ անձրև, կարկուտ, բուք, միայն թե չուշանայինք դասերից: Անախորժություններ լինում էին նաև դպրոցում. ծեծ, պատիժ, անհարկի կոպտություն: Բայց այն օրը, երբ Հրանուշն էր երգում, մենք վերանում էինք իրականությունից, մեր հոգին լցվում էր այն ամենով, ինչ լավն է ու բարի: Մենք մաքրվում էինք հոգեպես:

Ինչպե՞ս մոռանամ ես քո երգերը, իմ մանկության ընկերուհի Հրանո՛ւշ Զաքարյան: Հիմա էլ, երբ ռադիոն հաղորդում է հովվի սիրո երգը, խփում եմ աչքերս ու ինձ թվում է, թե քո ձայնն եմ լսում տասնամյակների խորքից: Այդ ժամանակ դուստրս թախծալի նայում է ինձ ու նշանով հասկացնում տնեցիներին. «Ս՜ս՜ս, հայրիկն

Հրանուշի ձայնն է լսում...» Նրան պատմել եմ, նա գիտի, թե ինչու այդ երգը տակնուվրա է անում ինձ:

— Լսի՛ր, Լևո՛ն, դու ինչո՞ւ ես Զաքարյան,— մի օր հեռախոսով հարցնում եմ թերթերից մեկի խմբագրին:

Ծիծաղում է:

— Զաքարյան եմ, էլի, ինձ հո նոր չե՞ս ճանաչում: Դիլիջանի Զաքարյաններից շատերին պիտի որ իմանաս:

— Շատերն ինձ հետաքրքիր չեն... Նրանցից մեկին եմ կարոտել ու այնպե՜ս եմ կարոտել...

— Ո՞րին:

— Հրանուշ Զաքարյանին... կա՞, մնո՞ւմ է...

— Իմ հորաքույրն է...

— Լևո՛ն ջան, խնդրում-աղաչում եմ, գրիր իրեն, որ ես հիշում և կարոտում եմ իրեն... թող գտնի ինձ:

...Լուսակերտի ամառանոցս եկավ յոթանասունին մոտ ճերմակահեր մի կին, որի դեմքի խորշոմները եկել ծածկել էին նախկին գեղեցկության հետքերն անգամ:

— Հրանուշը ես եմ... Երևանում քեզ չգտա, եկա այստեղ,— ասաց և ոսկրացած ձեռքը մեկնեց ինձ:

Ո՞ւր էին չքացել թշերի թխակարմիր խնձորները: Ո՞ւր էին այն մեղմ շողերը, որոնք այն արև-աչքերից ուղղվում էին ինձ, հասկացնելու համար, թե՝ «Իմ հովի՛վ եղբայր, քեզ համար եմ երգելու, հատկապես քե՛զ համար...»

Մի անգամ Արագածի լանջերից ինձ հյուր եկավ իմ հին ծանոթներից մեկը՝ հեքիմ Հարութը:

— Ո՞նց են գործերը, Հարո՛ւթ... Մի տեսակ տխուր ես երևում:

— Այո՛, տխուր եմ... Քանի օր է չեմ կարողանում ուշքի գալ: Մի կույր քրդի աչքերը բացեցի: Տասնհինգ տարի կույր էր մնացել: Բացեցի, նայեց դիմացի Մասիսին, նայեց դիմացը կանգնած քրդուհուն, որի խորշոմած



դեմքով արցունքներ էին գլորվում ցած ու հարցրեց.

— Բա ո՞ւր է իմ Զարիֆեն...

— Ես եմ, Ավդա՛լ, չճանաչեցի՞ր,— ասաց կինը լալով ու չոքեց ամուսնու առաջ:

Այն ժամանակ քուրդը խեղդված ձայնով աղաչեց ինձ.

— Հեքի՛մ, նորի՛ց կուրացրու ինձ...

Գյուղացիք պատմել էին Հարութին, որ աննման գեղեցկություն է ունեցել այդ քուրդ հարսը, բայց ամուսնու կուրանալուց հետո վշտից մաշվել-թոռոմել է ու ժամանակից շուտ ծերացել: Բայց կույր Ավդալի մտապատկերների մեջ իր Զարիֆեն մնացել է որպես ամենից գեղեցիկը Ալագյազի ծաղիկների մեջ... Ու հիմա մղկտում է, որ այլևս չկա իր սիրածը: Ու շնորհակալության փոխարեն, անիծում է, թե՝ «Հեքի՛մ, ինչո՞ւ բացեցիր իմ աչքերը...»

Հիմա Լուսակերտում նայում եմ իմ դասընկերուհու դեմքի խորշոմներին ու մտածում եմ. «Երանի չտեսնեի մեր սոխակ Հրանուշին այս վիճակում... Թող իմ հուշերում մնար բացվող վարդակակաչի նման այն աղջիկը...»

## ՓՈՔՐԻԿ ՀԵՐԿՈՒԼԵՍԸ

Երբ Ամասիան մեր երգի աստվածուհուն շշպռեց, թե՝

— Դե լա՛վ, մի՛ կոտրտվիլ,— իմ գլխում ծագած առաջին միտքն այն էր, թե այդքան սիրուն, այդքան շնորհքով, դրսից այդքան կիրթ պատանին ինչպե՞ս կարող է կոպիտ լինել: Իմ ընկեր Գրիգորը, օրինակ, որ կյանքի մեծ մասը անց է կացրել անասունների հետ և ընտանեկան դաստիարակություն չի տեսել, երբեք, ոչ մի դեպքում այդպես անվայել չէր խոսի, այն էլ ո՞ւմ, մի սիրունատես ու լավ սրտի տեր աղջկա հետ:

Ասածս չափազանցություն չէր Ամասիայի մասին: Նա մեր դասարանի ամենագեղեցիկ, ամենից լավ կազմվածքով և ամենից ուժեղ տղան էր: Իր քրոջ նման ճերմակամորթ, կլոր դեմքով, թիկունքն ու կուրծքը լայն, մի իսկական Ապոլոն էր նա, ավելի շուտ՝ Ապոլոնի վաղ պատանեկությունը: Կարծեմ մեր դասարանում նա միակն էր, որ ընդմիջումների ժամանակ ֆիզկուլտուրայով էր զբաղվում բակում դրված ֆիզկուլտ հարմարանքների վրա: Առանձնապես մեզ հիացնում էին նրա ճարպիկ և վստահ շարժումները ձողափայտի վրա, ձեռքերի վրա դիք կանգնելը, ձողափայտը թևերի տակ՝ ամբողջ մարմնով անիվի նման պտըտվելը: Եվ այդ խաղերի ժամանակ այնպես էր ներքին ավյունը հորդում, որ դեմքը դառնում էր վարդագույն ու կարծես ջերմության անտեսանելի ալիքներ էր սփռվում չորս կողմ:

Իսկ ինչո՞ւ էր նա նստում այն բաժանմունքում, ուր երկու տարով իրենից փոքր քույրն էր: Այդ ևս հասկանալի է: Խաղով, զվարճություններով հաճույքներով տարված, չէր կենտրոնանալու ուսման վրա: Մանավանդ հովեկները, Ռոտոնդը, պարահանդեսները ամառվա ընթացքում գլխից քշում տանում էին այն ամենը, ինչ ձմեռը ստացել էր դպրոցում:

Նկատում էի իր մեծամտությունը, լուռ հակակրանքով էի նայում իրեն և զգում էի, որ նա էլ ինձ չի սիրում:

Գ
Ի
Տ
Ե՞
Ք
Ո
Ր...

### ՈՎ ՈՐՔԱՆ Է ԱՊՐՈՒՄ

1794 թվականին ձկնորսները բռնեցին երկու մետրանոց մի գայլաձուկ, որի խռիկներում հայտնաբերված ոսկ-



*Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ*

Դեմուղեմ հանդիպելիս հանդուգն հայացքի մեջ պարզ կարդում էի. «Մի սրա շնորհքին մտիկ արեք...»

Այդպես էլ իմ ու Ամասիայի ջուրը մի առվով չգնաց: Եվ դա երբեմն արտահայտվում էր նաև դասերի ընթացքում:

Այսպես.

— Ամա՛սիա Մատինյան, ինչո՞ւ ամռան օրերը երկար են, ձմռանը՝ կարճ,— հարցնում է պարոն Պատվականը:

Ամասիան չի ասում, թե՝ չգիտի, ուղղակի ամբարտավան պատասխան է տալիս.

— Օրերի երկարելն ու կարճանալը հովիվները կիմանան... Նրանց ապրուստը դրանից է կախված... Թող նրանք պատասխանեն:

Վարժապետը մռայլվում, բայց լռում է:

Գյուղաքաղաքում ես քաշվող էի, բայց այդպիսի դեպքերում, կանգնում էի, մատ բարձրացնում ու վստահ ասում.

— Այո՛, այդ բանը մենք քաղաքի տղաներից լավ պիտի իմանանք: Ես պատասխանե՞մ, վարժապե՛տ:

— Կարելի է, ասա՛...

Եվ ասում էի:

Դա վառում էր Ամասիային, և ես ատելություն էի նշմարում նրա մոխրագույն աչքերում:

*(Շարունակելի)*

յա մատանու վրա գրված էր. «Դրեց ցար Բորիս Ֆեոդորովիչը»: Ուրեմն գայլաձուկն ապրել էր երկու դարից ավելի:

Կոկորդիլոսները ապրում են մինչև 300 տարի, փղերը 200-ից ավելի:

Կրիաների որոշ տեսակներ նույնպես ապրում են երկու դարից ոչ պակաս, մինչև 300—400 տարի, թռչուններից ամենաերկարակյացներն են արծիվը և ուրուրը, որոնք ապրում են մինչև 100 տարի: Թութակն ապրում է 90—100 տարի, ագռավն ու բվեճը՝ 70, թառափ ձուկը՝ 100: Ընտանի աղավնիներից շատ քչերն են ապրում մինչև 75 տարի: Մոտ 50 տարի ապրում են ռնգեղջյուրն ու ավանակը: Ձիերն ապրում են 28 տարի, շները՝ մինչև 38:

# ԵՎ ԱՀԱ ՄԻ ՕՐ...

ՓԵՏՐՎԱՐԻ 8-Ը ՊԱՏԱՆԻ ՀԵՐՈՍԻ ՕՐՆ Է։

Սերյոժկան վեց տարեկան էր, երբ առաջին անգամ հոր՝ Յակով Վասիլևիչի հետ տրակտոր նստեց։ Այնուհետև հընարավոր ամեն առիթով գնում էր հոր կամ ավագ եղբոր մոտ, որը նույնպես տրակտորիստ էր, ու պտտվում էր նրանց շուրջը, օգնում մեքենան վերանորոգելիս։ Այսպես, իր համար էլ աննկատ, սկսեց հասկանալ, թե ինչն ինչոց է, և հայրն ու եղբայրը երբեմն ղեկը վստահում էին նրան։

Երբ ավագ եղբայրը բանակ մեկնեց, նրան թողեց «Գյուղատնտեսական տեխնիկա» տեղեկատուն, որը Սերյոժկան ձեռքից ցած չէր դնում։

Օրեցօր մեծանում էր սերը տեխնիկայի նկատմամբ, օրեցօր գիտելիքները ավելանում էին։

Եվ ահա մի օր...

Այդ օրը նա կովին արոտավայր տանելու ցանկություն չուներ։ Առավոտյան կովին հասցրեց գետափ, իսկ ինքը գրույցի բռնվեց մորաքույր Լիդայի հետ։ Այդ ժամանակ էր, որ Պավել Գրիգորևիչ Յուշչուկը տրակտորով իջնում էր գետից ջուր վերցնելու։ Կովը հաճույքով արածում էր։ Սերյոժկան ուրախությամբ մտածեց, որ հնարավորություն կունենա տրակտոր նստել, գուցե քեռի Պավելը ղեկն էլ վստահի։ Տրակտորը գետափին կանգնեց, և Պավել Գրիգորևիչը ընկրսեց մղիչով ջուր լցնել տակառը։ Սերյոժկան նոր էր հրաժեշտ տվել մորաքույր Լիդային, երբ կատարվեց անսպասելին... Պավելը սարսափահար ճչաց. նրա հագուստը փաթաթվել էր կարդանային լիսեռին։ Եվս մեկ րոպե և կկատարվեր անուղղելին։

Տղան կտրուկ պոկվեց տեղից և սուրաց դեպի տրակտորը։ Շարժիչը չարագույժ փնչոցով աշխատում էր և հնարավոր չէր այն կանգնեցնել։ Տասներեքամյա պատանին լարված նայում էր խցիկի ներսը և զգում էր, որ ինչ-որ բան իր տեղում չէ։ Պարզվեց, որ այդ «ինչ-որ բանը» բանալին է։ Այո, բանալին տեղում չէր։ Յուշչուկը դրանով մետաղամաս էր ամրացրել մեխանիզմին։ Սերգեյը գտավ բանալին, ոտքի ուժգին հարվածով խփեց, դուրս հանեց այն և վերջապես շարժիչը կանգնեցրեց։

Այդ բոլորը նա կատարեց արագ և ճիշտ ժամանակին: Եթե մի ակնթարթ էլ ուշացներ, գիտակցությունը կորցրած, արնաշաղախ տրակտորիստին ոչինչ չէր փրկի. լիսեռը կմամլեր նրան...

— Չմահանա՜ս, քեռի՛, չմահանա՜ս, — արտասվում ու թախանձում էր տղան, շփոթված կանչում ու ինչ-որ բան հիշելով քաշքշում էր նրան:

Սակայն առանց օգնության, մենակ չէր կարող տրակտորիստին տեղից շարժել: Սերյոժկան ուզում էր Պավելին տեղափոխել իր իսկ տրակտորով, և օգնության կանչեց մորը: Բայց հենց այդ պահին շրջադարձի վրա երևաց կաթ տեղափոխող մեքենան: Տղայի կանչերը հասան վարորդին, և քիչ անց Յուշչուկին տեղափոխեցին հիվանդանոց:

Մեկ ամիս անց Պավելը լրիվ ապաքինված դուրս գրվեց հիվանդանոցից: Հենց այդ օրերին էլ դպրոցում պիոներական դրուժինայում հանդիսավոր տողան էր: Սերյոժկան շատ էր ուզում ժպտալ, բայց հիշում էր մորը, որը միշտ, անգամ պակաս հանդիսավոր պայմաններում, պահանջում էր. «Մի՛ պտտվիր, տղա՛ս, ուղի՛ղ կանգնիր, հստա՛կ պատասխանիր մարդկանց հարցերին»: Եվ նա զարմացած, ասես իր սխրանքի մասին չէին պատմում տողանի ժամանակ, լսում էր ուսուցիչներին: Չէ՛, նա իրեն հերոս չէր համարում. բոլոր հերոսներն էլ ինչ-որ ուրիշ են, խորհրդավոր, իսկ ինքը արել էր այն, ինչ անհրաժեշտ էր եղել տվյալ պահին և, ինչպես ասում են, չէր կորցրել իրեն:

Սերգեյը այդպես էր մտածում ու չգիտեր ինչպես պահի իրեն, երբ վերջապես գործ գտնվեց. սկսեց ընթերցել հենց նոր նվեր ստացած ժամացույցի մակագրությունը. «Մարդու կյանք փրկելու համար. «Զիրկա» կոլտնտեսության վարչությունից Վելիկի Ժիտին գյուղի դպրոցի վեցերորդ դասարանի աշակերտ Սերգեյ Խոտինչուկին»:

Խիզախ վեցերորդ դասարանցին, կատարած սխրանքի և մարդու կյանքը փրկելու համար, պարգևատրվեց ՀամԼԿԵՄ Կենտկոմի պատվոգրով:

**Գիտե՞ք որ...**

## ՏԱՐԱՈՒՄԱՐԱ ՀՆԴԿԱՑԻՆԵՐԸ

Սյերա-Մադրե լեռներում՝ Մեքսիկայի հյուսիսում, բնակվում է հնդկացիների տարաումարա ցեղը: Հնդկացիները զբաղվում են հողագործությամբ ու որսորդությամբ, բնության հետ խաղաղ ու հաշտ են ապրում, աշխատում են չխախտել նրա օրենքները: Որսորդությունը նրանց համար միայն սնունդ հայթայթելու աղբյուր է:

Հնդկացիները բարեկամաբար են տրամադրված միմյանց հանդեպ, օգնում են իրար, երբեք չեն խանգարում հարևանների հանգիստը: Մեկ ուրիշի տանը մոտենալիս, տարաումարան երբեք չի թակում դուռը կամ լուսամուտը (նրանց պատկերացմամբ այդպես են վարվում միայն չար ոգիները), այլ բարձրաձայն կանչում է «կուիրա» («ողջույն»): Եվ եթե պատասխա՛ն չի ստանում, հեռանում է:

Եթե տարաումարային որևէ անախորժություն է պատահում, նրա դեմքին դառնության հետք չես տեսնի, նա, ընդհակառակը, կժպտա: Այդ ժպիտը նախազգուշացնում է. չի կարելի վշտացնել մարդուն, նրա հետ վատ վարվել:

# ԶՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*
*Բանասիրության դոկտոր*

## 22. ԼԵԶՎԱԿԱՆ ԱՆԿԱՐԳՈՒԹՅՈՒՆ, ԿԱՄ՝ ՎԵՐՍՏԻՆ «ԴՊՐՈՑԱԿԱՆ ԺԱՐԳՈՆԻ» ՄԱՍԻՆ

«Դպրոցական ժարգոն» ասում ենք պայմանաբար, քանի որ, ճիշտ է, դա ամենից շատ տարածված է դըպրոցականների մեջ, բայց այդպես խոսում են նաև երիտասարդ, նույնիսկ հասուն մարդիկ:

Քի՞չ է պատահում՝ երիտասարդ, կարգին հագնված մարդը, դժգոհում է ընկերոջից. «Արա՛, ինչ ես ֆըռցընում»: Ուզում է ասել՝ ի՞նչ ես դեսուդեն գըցում, գուցե և՝ ի՞նչ ես պոչ խաղացնում կամ նման մի բան, բայց գերադասում է «ֆըռցընել»-ը:

Տղաներ են, զրուցում են, մեկը պատմում է, թե ինչ փորձանք է եկել գլխին: «Դե ասա քաշվել ես, էլի՛»,— ամփոփում է զրուցակիցը: «Հա՛, քաշվանք, իսկականի՛ց քաշվանք»,— համաձայնում է ընկերը՝ իր միակ անձի մասին խոսելով անպայման հոգնակի թվով: Կամ՝ գնացե՞լ ես այսինչ կամ այնինչ տեղը,— հարցնում է մեկը: «Փիխ կըլներ, որ գնայի»,— պատասխանում է մյուսը, և դրա իմաստն այն է, թե «ծիծաղելի կլիներ, որ գնայի»: Ի՞նչ մարդու մասին է խոսքը, ծիծաղելի՞ մարդու, ուրեմն նա կդառնա «փըսիխ մարդ»: Այդ չարաբաստիկ փըսիխ-ն ուրիշ իմաստ էլ ունի. «դպրոցական ժարգոնի» մեջ դա նշանակում է նաև ջղային մարդ՝ «Չէ՛, գործ չունես, արա, էտի փսիխ ա»: Ինձ, հավանորեն՝ նաև ձեզ, վիճակվում է լսել օտար բառերի խեղաթյուրման էլ ավելի հրեշավոր նմուշներ՝ «տռչկա բռնել», կամ «տռչկել», ասել է թե՝ սևեռվել, կենտրոնանալ մի առարկայի վրա, հետևել մի բանի: Չե՞ք լսել, գուցե և՝ ասել. «Նագլիություն մի անի»՝ հասկացնելու համար, թե «Համը մի հանի»: Սպորտային բառապաշարում գոյություն ունի մ ա ն թ ր ա ժ բառը, որը բնորոշում է պարտվող մարզիկի շփոթված, հուսահատ վիճակը: Դա ևս ամուր տեղ է գտել «դպրոցական ժարգոնում»: Բավական է, որ մեկը կապ ընկնի դաս պատասխանելիս, որպեսզի ասեն՝ «մանթրաժ է ընկել»: Սա ավելի լավ չէ, քան՝ որևէ թիմի «բալետ անելը»:

Չպիտի կարծել, թե «դպրոցական ժարգոնը» լեզուն աղավաղում է միայն օտար բառերի տգեղ ու տձև կիրառությամբ: Օտար բառերն այստեղ մեղք չունեն, մեղքը գործածողինն է: Ժարգոնը մայրենի լեզվի բառապաշարն էլ չի խնայում: Ասենք թե մեկը հրաժեշտ է տալիս մյուսին. կարող է ասել՝ «Ես գնացի», բայց ինչո՞ւ պիտի այդքան սովորական ձևով խոսի, երբ կարող է ասել՝ «Ես ցվրվա»: Նույնը չէ՞, երբ լսում ես այսպիսի հարց ու պատասխան՝ «Այսինչը տունն ա՞», «Չէ, տունը չի»: Տանն է, տանը չէ՝ ո՛չ մի դեպքում, ինչպե՞ս կարելի է ճիշտ խոսել, ուրիշների նման խոսել:

Տղաներ են, ջուրը պիտի մտնեն լող տալու համար. «Արա՛, քցվի՛», «Չէ՛, առաջ դո՛ւ քցվի»,— համոզում են միմյանց: Կամ՝ հիացմունք են հայտնում տեսած ֆիլմից՝ «Արա՛, գազան կինո է»:

Թե ինչքան է այս ամենը տգեղ ու անճաշակ՝ երևում է առաջին հայացքից, այնքան տհաճ ու անդուր, որ չես էլ ուզում օրինակներ բերել, բայց ըստիպված ես՝ իրական պատկերը ցույց տալու համար: Թե ինչպես են այս բոլորը գռեհկացնում, այլանդակում մայրենի լեզուն՝ դա էլ պարզ երևում է: Բայց ի՞նչն է երևույթի պատճառը: Երբ դպրոցականները թվաբանությանը թըվաբ են ասում, բնագիտությանը՝ բնագ («Թվաբի դաս ունենք», «Բնագը չեմ սովորել»), երբ միմյանց հրաժեշտ տալիս մարդիկ, երբեմն ասում են «Հաջող», ես դա հասկանում եմ. այդ անհամ «ություն»-ների կրճատման մեջ արտահայտվում է կարճ խոսելու ձըգտումը, այսպես կոչված՝ «տնտեսման սկզբունքը», որ հատուկ է ամեն մի խոսակցական լեզվի:

Բայց ի՞նչն է ստիպում, որ մեր տղաներն ու աղջիկները «Տանը չէ» ասելու փոխարեն ասեն «Տունը չէ», «Ես գնացի» ասելու փոխարեն ասեն՝ «Ես ցվրվա» և այլն, և այլն:

Սա արդեն ավելի դժվար է հասկանալ, առավել ևս՝ բացատրել, ինչպես դժվար է հասկանալ, թե ինչու նույնիսկ բարձրահասակ տղաները հագնում են բարձր կրունկներով, գրեթե կանացի, կոշիկներ, թե ինչու աղջիկները փետում են իրենց սիրուն հոնքերը և փոխարենը հատուկ մատիտով սև գիծ քաշում կամ ինչու են կանաչ ներկում-այլանդակում իրենց աչքերը:

Այս ամենի վրա մենք վրդովվում ենք և բացատրությունը տեսնում «մոդա» հասկացության մեջ: Լեզվական անկարգությունն էլ, ինչպես ամեն բան այս աշխարհում, ունի իր բացատրությունը: Ըստ երևույթին դա ևս կապված է մարդու ինքնահաստատման ձգտման հետ: Դա է երևույթի հոգեբանական հիմքը: Այդ ձգտումն առհասարակ հատուկ է մարդուն կենսաբանորեն. գիտակցաբար թե անգիտակցաբար մարդն իր արարքներով, իր պահվածքով ու վարքագծով ուզում է հաստատել իրեն, իր անհատականությունը, իր յուրահատկությունը: Ժարգոնով խոսելը դրա ձևերից մեկն է, ճիշտ է, ոչ լավագույն ձևերից, բայց դրանցից մեկն է՝ տես՛ք-տես՛ք ես ուրիշների նման, սովորականի պես չեմ խոսում, ուրեմն՝ մյուսներից տարբերվում եմ, առանձնաշեշտվում եմ: Բայց ի՞նչ մի լավ բան կա այդպես տարբերվելու մեջ,— կարող եք հարցնել դուք: Դա արդեն հարցի մյուս կողմն է, որ ունի պարզ պատասխան՝ իհարկե, ոչ մի լավ բան, ինչպես ոչ մի լավ բան չկա հոնքերից զրկվելու կամ աչքերը ներկելով փչացնելու մեջ: Սակայն այդ պատասխանը դրությունը չի փոխում: Ժարգոնները, դրանց մեջ նաև «դպրոցական ժարգոնը», կան և մնում են: Ավելին, դրանք ամեն մի կենդանի, ապրող լեզվի անխուսափելի հատկանիշներն են: Պետք է խոստովանել՝ ժարգոնների մեջ պատահում են այնպիսի վառ, գունեղ բառեր ու արտահայտություններ, որ դրանք թափանցում են համաժողովրդական, նույնիսկ՝ գրական լեզվի մեջ: Ռուս լեզվաբանները վկայում են, որ, օրինակ, *двурушник* (երկերեսանի), *этот номер не пройдет* (այդ համարը չի անցնի), *валять дурака* (իրեն հիմարի տեղ դնել), *бить по карману* (վնաս տալ, շահին դիպչել), *втереть очки* (աչքին թոզ փչել) և այլ ուրիշ բառեր ու դարձվածքներ ռուսաց համաժողովրդական լեզուն են թափանցել մուրացկանների, վաճառականների, խաղամոլների ժարգոններից:

Ուրեմն, կարելի է եզրակացնել, ժարգոնների, նաև «դպրոցական ժարգոնի», հանդեպ ճիշտ վերաբերմունքը դրանց իսպառ ժխտումը չէ, ոչ էլ դրանց մեջ եղած կենդանի ու կենսունակ տարրերի, վառ, դիպուկ արտահայտությունների անտեսումը: Դա նույնքան սխալ է, որքան պատանիների ու աղջիկների այսօրվա վարքուբարքի հենց միայն դատապարտումը, ինչ է թե նրանք այնպիսին չեն, ինչպիսին մենք ենք եղել ժամանակին: Ու-

շաղիր հայացքը նրանց և՛ վարմունքի, և՛ խոսվածքի մեջ կարող է նկատել նաև այն կենսունակ տարրերը, առողջ հատիկները, որոնք վաղ թե ուշ դառնալու են սովորական կենցաղ, մտնելու են մեր առօրյա խոսակցական լեզվի մեջ։ Թե որ տարրերը, որ հատիկները՝ ցույց կտա կյանքի բնականոն ընթացքը։

«Դպրոցական ժարգոնի» գոյությունը ոչ միայն բնական է, այլև բացատրելի։ Բոլոր ժամանակներում և բոլոր երկրներում էլ,— այսպես են դատում որոշ լեզվաբաններ,— տղաներն ու աղջիկները սիրել են մի քիչ կոպիտ ու անզուսպ երևալ, քաշվել են մատնել իրենց հուզումները, քնքուշ զգացմունքները, այստեղից էլ՝ նրանց խոսվածքի կոպտությունը։ Գուցե այդ երևույթը շատ էլ չպիտի՞ անհանգստացնի, քանի որ հասակ առնելով նույն այդ պատանիներն ու աղջիկները հրաժեշտ են տալիս «դպրոցական ժարգոնին»։

Ո՛չ, պետք է անհանգստացնի։

Ինչո՞ւ։

Նախ այն պատճառով, որ, ճիշտ է, մարդիկ, հասակ առնելով, հրաժեշտ են տալիս «դպրոցական ժարգոնին», բայց դա անհետևանք չի անցնում, դրա հետքերն, այնուամենայնիվ, մնում են մարդկանց լեզվի մեջ։ Եվ ամենագըլխավորը՝ լեզվական անկարգությունն ազդում է մարդու բնավորության վրա, անկարգ է դարձնում նրա բնավորությունը։ Անկարգ, տգեղ, խենեշ լեզուն դառնում է սովորույթ, տգեղացնելով մարդու ներաշխարհը, իսկ սովորույթը, ինչպես ասում են, մարդու երկրորդ բնավորությունն է։ Մարդու լեզուն և բնավորությունը կապված են միմյանց հետ։ Կապված են սերտորեն և փոխադարձաբար։ Այդ մասին՝ հաջորդ անգամ։



Մարտիրոս Սարյան

# (1880—1980)

Վարպետի ամբողջ կյանքը եղել է ինքնամոռաց նվիրում հայրենիքին ու իր ժողովրդին։ Նա կապված էր իր երկրին այնպես, ինչպես ծառը հողի հետ։ «Դեռ երիտասարդ տարիքում ես հասկացա,—գրել է Վարպետը,— որ իսկական արվեստագետը պետք է լինի հասարակության առաջադեմ անդամը՝ բարոյական իր բարձր արժանիքներով։ Էժան փառքը պետք է խորթ լինի նրան, նա պետք է նվիրվի ժողովրդին ծառայելու մեծ գաղափարին, դառնա նրա սիրտն ու հոգին»։

Յոթանասուն տարիների ստեղծագործական կյանքում Սարյանը կերտել է շուրջ չորս հազար պատկեր։ Վրձնի անկրկնելի ուժով նա գովերգել է մայր բնության գեղեցկությունն ու մարդու ստեղծագործ աշխատանքը։ Նա աշխարհին է պարգևել երկրագնդի շատ ժողովուրդների կողմից այնքան սիրված ու գնահատված իր սարյանական «Հայաստանը»։

Մեծ արվեստագետի հանդեպ, մայր ժողովրդի ու կառավարության փոխադարձ սիրո վառ վկայությունը հանդիսացավ Մարտիրոս Սարյանի թանգարանի ստեղծումը։ Իր գոյության տասներեք տարիների ընթացքում, մեր երկրի տարբեր կողմերից ու արտասահմանից թանգարան են այցելել ավելի քան մեկ միլիոն մարդ։ Սարյանի թան-



*Տուն-թանգարանի ցուցասրահներից մեկում*



*Մ. Սարյանի տուն-թանգարանը*

գարանը իրավամբ դարձել է մեր մշակույթի կարևոր օջախներից մեկը:

Այստեղ այցելուներին առաջինը դիմավորում են Վարպետի իմաստուն խոսքերը. «Հողը մի կենդանի էակ է, նա ունի իր հոգին և առանց հողի, առանց հայրենիքի հետ սերտ կապի, մարդ չի կարող գտնել իրեն, իր հոգին»: Գույնի ու լույսի առինքնող ներդաշնակությամբ ջերմացած Սարյանի կտավները ահա այս խորհուրդը՝ հավիտենության խորհուրդն են պատգամում մարդկանց:

*ՇԱՀԵՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ*
*արվեստաբան, Մ. Սարյանի տուն-թանգարանի դիրեկտոր*

*Մ. ՍԱՐՅԱՆ — Գիշերը Եգիպտոսում*




## ԻՐԻՆԱՅԻ, ՖԻՈՆԵԻ ԵՎ ԽԱՂԱՂ ԱՊԱԳԱՅԻ ՄԱՍԻՆ

Լոնդոնյան «Բրոմտոն» հիվանդանոցում տասնմեկամյա լենինգրադցի Իրա Սուդնովսկայայի սիրտը բարդ վիրահատության ենթարկեցին:

— Վիրահատությունը տևեց չորս ժամ,— ասաց հոսպիտալի գլխավոր վիրաբույժ Քրիստափոր Լինկոլնը:— Վիրահատության ժամանակ ես շատ էի հուզվում. Իրան մեր առաջին ռուս հիվանդն էր:

Սետոն Բարն ավանի յոթնամյա բնակչուհի Ֆիոնե Քամփինգսին լրիվ կուրություն էր սպառնում: Անգլիացի բժիշկները ձեռքները տարածում էին. ներկա դեպքում մենք անուժ ենք որևէ բան անելու: «Ես նույնիսկ հրաշքի հույս չունեի, և հանկարծ այն տեղի ունեցավ»,— ասում է Ֆիոնեի մայրը: «Հրաշագործները» Մոսկվայի Հելմհոլցի անվան աչքի հիվանդությունների ինստիտուտի բժիշկներն էին:

Սովետական Միությունը գիտության և կուլտուրայի ասպարեզում համագործակցության պայմանագիր է կնքել կապիտալիստական շատ երկրների հետ: Փորձի և գիտելիքների փոխանակումը տարբեր երկրների գիտնականների միջև նպաստում է տեխնիկական առաջընթացին, նոր հայտնագործություններին, օգնում է պայքարել հիվանդությունների դեմ, խելամտորեն օգտագործել հողագնդի հարստությունները: Մարդկությանը օգտակար նման համագործակցությունների համար է պայքարում կոմունիստական կուսակցությունը, սովետական կառավարությունը:

## «ՓՐԿԵ՛Ք ՄԵԶ ԾԵԾԻՑ»

«Փրկեք մեզ ծեծից»,— պահանջում էին երեխաները՝ Լոնդոնում տեղի ունեցած ցույցի մասնակիցները:

Անգլիայում մինչև օրս էլ դպրոցներում չեն վերացվել մարմնական պատիժները, ուսուցիչները հաճախ են գործի դնում բռունցքներն ու «ձեռքն ընկած ցանկացած առարկաները»՝ կոշիկներ, քանոններ, փայտեր և այլն: Երթի մասնակիցները շարժվեցին դեպի պրեմիեր-մինիստր Տետչերի պաշտոնավայրը և նրան հանձնեցին հանրագիրը, խնդրելով «ազատել իրենց ուսուցչի մահակից»:

Բողոքի երթը նախաձեռնել էր բրիտանական դպրոցականների Ազգային Միությունը: Միության ներկայացուցիչները հայտարարեցին. «Վաղուց ժամանակն է, որ մեր երկրում արգելվի դպրոցականների ֆիզիկական խոշտանգումը: Ամբողջ Եվրոպան, բացառությամբ Իռլանդիայի, հրաժարվել է դաստիարակության նման մեթոդներից: Ուրեմն ինչո՞ւ է մեր դպրոցներում կիրառվում նման պրակտիկան»:



Ջ. ՋՈՐՋ

# ՄԱՐԴԿԱՅԻՆ ՎԱՐՔԱԳԾԻ ՍԱՂՄԵՐԸ



Մաունթ Մաքինլի արգելանոցում, որը Ալյասկայում է, սառցապատ գետի վրայով հանկարծ սուլոցով սուրաց լեռնալանջից իջած ուժգին քամին: Կռռաց ագռավը, սահեց ինչ-որ մեկի ստվերը: Բրիտանական Կոլումբիայի համալսարանի կենդանաբան Գորդոն Հեյբերը հեռադիտակը մոտեցրեց աչքերին: Դեպի գետափին գտնվող հյուղակն էր քաշ գալիս վիրավոր մի գայլ: Գազանի թիկունքը պատռված էր հյուսիսային եղջերուի՝ կարիբուի դանակի պես սուր սըմբակներով: Մտնելով հյուղակ, վիրավոր գայլը փռվեց հատակին: Հեյբերը կարծեց, թե կենդանին հյուղակ է սողացել միայնության մեջ սատկելու համար, ինչպես երբեմն վարվում են հիվանդ գազանները: Մյուս օրը գիտնականը կրկին եկավ նույն տեղը: Այս անգամ նա հեռադիտակով մի այլ գայլ նըկատեց: Նորեկը մտավ հյուղակ: Նրա երախում մսի մի մեծ կտոր կար, որը գցեց վիրավոր գայլի առաջ: «Ամեն երեկո,— պատմում է Հեյբերը,— սև գայլը կերակրում էր ընկերոջը, մինչև նա ապաքինվեց և կրկին միացավ ոհմակին»: Այդ հեռավոր արգելանոցում Հեյբերը երկու տարի ուսումնասիրել էր գայլերի վարքագիծը և վերջապես նրան հաջողվել էր տեսնել այն, ինչը մինչ այդ ոչ ոք չէր տեսել՝ կարեկցող գայլին:

Ի՞նչ է սա նշանակում: Նշանավոր կենդանաբան Կ. Կարպենտերը ասում է. «Մենք էթոլոգներս (կենդանիների վարքագիծն ուսումնասիրող գիտնականները) կենդանիներին մարդկային վարքագիծ չենք վերագրում, մենք պարզապես նրանց մեջ տեսնում ենք մարդկային վարքագծի սաղմեր»: 1932 թվականին Պանամայի ջրանցքում գտնվող Բարնո-Կոլորադո կղզում Կարպենտերի կատարած ուսումնասիրությունները ցույց են տվել, որ երկունքի մեջ գտնվող կապիկին հոտի մյուս էգ կապիկները հետևում են անքող հուզմունքով, աշխատում են իրենց ձեռքը վերցնել, տնտղել նորածնին, այսինքն իրենց պահում են այնպես, ինչպես սովորաբար կանայք աշխարհի բոլոր ծայրերում:

Վերջին տարիներին կենդանիների վարքագծի ուսումնասիրությունը մեծ տարածում է գտել աշխարհում: Նշանակալից հաջողությունների է հասել երիտասարդ անգլուհի Ջեյն Հուդելը, որը տասներկու տարի առաջ Տանզանիայի Գոմբե ազգային պարկում ստեղծեց շիմպանզեների ճամբար: Հուդելի ուսումնասիրություններով ապացուցվեց, որ բուսակեր համարվող շիմպանզեները երբեմն որսի են դուրս գալիս և հանդիսավոր պայմաններում ուտում իրենց որսի միսը: Փենսիլվանիայի համալսարանի շրջանավարտ Գեզա Տելեքին պնդում է, որ շիմպանզեների կազմակերպած որսերը ուղեկցվում են համապատասխան ծիսակատարություններով: Որսի իրավունքը վերապահվում է միայն հոտում բարձր դիրք գրավող կապիկներին (այսպես կոչված ալֆերին), որոնք զոհի միսը հավասար բաժանում են խմբի մյուս անդամների միջև: «Երբ երկու շիմպանզե հանդիպում են անտառում,— պատմում է Տելեքին,— նրանք երբեմն կանգնում են ետևի թաթերի վրա, ձեռք-ձեռքի տալիս և ըն-

կըսում եռանդով թափահարել»:

Ողջույնի ծեսերը հատուկ են նաև այլ բարձրակարգ կենդանիների: Փղերը ձգում են կնճիթները և կախ գցում ականջները, ինչպես կանայք շրջազգեստի քղանցքերը՝ ռեվերանսի ժամանակ: Սկյուռը պտտեցնելով պոչը, մյուս սկյուռից հարցնում է նրա սեռը և դիրքը, որը վերջինս գրավում է սկյուռյան հիերարխիայում: Իրար հանդիպած շները հոտոտում են մեկմեկու, որով, ողջունելուց բացի, նաև ծանոթանում են իրենց հասարակության մեջ միմյանց գրաված դիրքին: Նախ հոտոտում է ենթակա դիրք գրավող շունը: Եթե շները իրար են մոտեցել պոչերը ցցած, ուրեմն որևէ մեկի գերազանցությունը դեռևս որոշված չէ և բանը կարող է հասնել կռվին:

Կենդանիների խաղերը զարմանալիորեն նման են մարդկանց խաղերին: Առյուծի ձագերը սիրում են հավասարակշռություն պահել գերանների վրա, մանուկ դելֆինները խխունջը գնդակի նման մի լողաթևից մյուսն են նետում: Կռիվն ու գզվռտոցը նույնպես անպակաս են այդ խաղերում, ինչպես երեխաների մեջ: Գայլաճտերը կռվում են 8—12 շաբաթական հասակում: Այդ շրջանում մայր գայլը հետևում է, որ նրանք չվնասեն իրար:

Բազելի համալսարանի գիտնական Ռուդոլֆ Շենկելը պատմում է, որ վաղ գարնանը հարաբերությունները խիստ սրվում են չափահաս և երիտասարդ առյուծների միջև, երբեմն տեղի են ունենում երկկողմանի ընդհարումներ: Սակայն երբ աշխարհ են գալիս այդ տարվա ձագերը և ծննդից 10 շաբաթ անց մայրերը կորյուններին ներկայացնում են հոտին, լարվածությունն անմիջապես անհետանում է, կռիվները դադարում են: Ինչո՞ւ է փոխվում առյուծների տրամադրությունը: Էթոլոգները բացատրում են նրանով, որ առյուծները սիրում են իրենց ձագերին և վերջիններիս ներկայությունը մոռացության է տալիս թշնամությունը, մղում համերաշխության:

Տողերիս հեղինակը նմանօրինակ դեպքի վերջերս ականատես եղավ սեփական տանը: Կատուն ձագեր էր ծնել վերին խորդանոցում: Մի քանի օր շարունակ չէր հեռանում ձագերից, նվիրվածորեն խնամում էր նրանց: Վա՜յ երեխաներին, եթե մեկնումեկը փորձեր ձեռք տալ նրա ձագերին, վայ ծեր շանը, եթե համարձակվեր երևալ խորդանոցի դռանը: Մի երեկո լսվեց կատվի հանդիսավոր հրավիրականչը: Նա հավաքել էր ձագերին և նրանց գլուխն անցած՝ երթն առաջնորդում էր հյուրասենյակ: «Մյաո՜ւ», — մի անգամ էլ հաղթական կանչեց նա և նստեց հյուրասենյակի կենտրոնում: Ձագուկներն այնպես սիրալիր հայացքներով էին նայում ինձ, որ ես չդիմացա և հիացմունքով նրանց վերցրի ձեռքս: Երբ ետ դրի ձագերին, կատուն նույն հանդիսավորությամբ նրանց դուրս տարավ հյուրասենյակից: Նա բավարարված էր, ձագերի ցուցադրումը «հասարակությանը» անցել էր բարեհաջող: Դրանից հետո երեխաներն իրավունք ստացան խաղալ ձագերի հետ, ծեր շունը ուզածի չափ կարող էր հոտոտել ու լիզել նրանց:

Այնուամենայնիվ, կենդանին ընդունա՞կ է տրամաբանելու, կարո՞ղ է վերլուծել որևէ պրոբլեմ և ընդունել որոշում: Այս հարցին դրականորեն են պատասխանում ճապոնացի գիտնականները, որոնք 40 տարի շարունակ Կոշիմա կղզում ուսումնասիրում են մակականերին (կապիկ տեսակ):

Մակակաների համար լողափին բակլա և ցորեն էին շաղ տվել: Մի անգամ մակականերից մեկը, որը պատրաստվում էր բերանը տանել լողափից հավաքած ցորենը, պատահաբար բռան պարունակությունը թափեց ջրի մեջ: Ցորենը մնաց ջրի երեսին, իսկ ավազն իջավ հատակը: Կապիկը ջրի վրայից հավաքեց ու կերավ մաքրված ցորենը: Այդ դեպքից հետո նա սկսեց այդ եղանակով ուտելուց առաջ մաքրել ցորենը: Ի վերջո նրա օրինակին սկսեցին հետևել նաև մյուս կապիկները: Այդ դեպքը կատարվել է 1956 թվականին, իսկ այժմ, մակակաների այդ կղզում ուտելուց առաջ ցորեն լվանա-



լը սովորական երևույթ է, որը մայր մակականե-րը մյուս անհրաժեշտ բաների հետ սովորեցնում են իրենց ձագերին:

Գոմբեի ազգային պարկում Ջեյն Հուդելը տեսել է մի շիմպանզեի, որը մրջյուն որսալիս օգտագործել է ճյուղեր, նախապես պոկելով տերևները, որոնք նրան կխանգարեին այդ գործում: Շիմպանզեն ճյուղը մտցրել է մրջնանոցը, դուրս քաշել և կերել ճյուղի վրա հավաքված մրջյունները: «Մարդու ստվերի տակ» գրքում Հուդելը գրում է. «Դա առաջին հայտնի դեպքն է, երբ վայրի գազանը որևէ առարկա ոչ միայն օգտագործում է որպես գործիք, այլև նախապես կատարելագործում այն»:

Տելեքին պատմում է մի ծեր շիմպանզեի մասին, որը, ինչպես բոլոր ծերունիները, խուսափել է աղմկոտ ընկերակցությունից, առանձնացել ու լուռ նստել է որևէ ծառի տակ: Տելեքիի տանը ինձ մի անգամ բախտ վիճակվեց լսել մի տարօրինակ ձայնագրություն, որը խորապես ցնցեց ինձ: Տարօրինակ ձայները, որոնք լցրել էին սենյակը, զարմանալիորեն նման էին ողբի, թըվում էր հարազատները լացում են իրենց սիրելիի կորուստը: «Մի անգամ առավոտյան,—ասաց Տելեքին,— ես ականատես եղա, թե ինչպես մի շիմպանզե թռավ. ճյուղի վրա, բայց վրիպեց և ցած ընկնելով ջարդուխուրդ եղավ ցամաքած գետի քարերին: Մյուս կապիկները խմբվեցին մեռած ընկերոջ շուրջը, այդ ժամանակ էլ ես միացրի ձայնագրիչը»: .




ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15. Կարմիր բանակի փողոց 15: Հեռախոսներ՝ 56-82-72, 58-06-88, 56-14-96:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

# № 2 • ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ • 1980



Շապիկի առաջին էջը ՏԻԳՐԱՆ ՓԱՇԱՅԱՆԻ



ՎՖ 04659: Պատվեր 54: Տպաքանակ 52444: Տպ. 3 մամ.: Թուղթ՝ 70×90 1/16: Հանձնված է արտադրության 14/I 1980 թ.: Ստորագրված է տպագրության 22/II 1980 թ.:

ՀՍՍՀ հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:




*Ո՞րն է փոքրիկ նավաստու ստվերը*



*Գտեք տարբերությունը*

*Ո՞ր մեքենան է հասել եզրագիծը*






## ԱՆՔՆՈՒԹՅԱՆ ԴԵՄ

Անքնությամբ տառապում են շատերը: Նյու-Յորքի հեռուստատեսային կայաններից մեկը անքնությամբ տառապող մարդկանց օգնելու նոր միջոց գտավ: Հեռուստատեսային հաղորդումների վերջում էկրանում հայտնըվում է մի մարդ և ըսկըսում անուշ հորանջել: Այս նոր հաղորդումը աննախադեպ հաջողություն ունեցավ: Շուտով կայանը հեղեղվեց շնորհակալական նամակներով: Սկզբում հաղորդման միակ հեղինակն ու մասնակիցը հորանջում էր երկու րոպե, իսկ այժմ հեռուստադիտողների խնդրանքով հինգ րոպե անդադար հորանջում է:

## ԵԼԱԳԾՈՒՄ ԵՆ ԿՐԻԱՆԵՐԸ

Բարսելոնի ծովափում անցկացվեց 75 սանտիմետր վազքի Եվրոպայի անդրանիկ առաջնությունը: Այդ մրցումներում իրեն գերազանց դրսևորեց և հաղթող ճանաչվեց Իերոնիմա անունով կըրիան, որին վարժեցրել էր իսպանացի մի հողագործ: Այդ ճարպիկ մարզիկը առաջին իսկ փորձից հեշտությամբ վազանցեց Անգլիայից բերված Կայծակ կրիային: Հաղթողը վազքուղին անցավ ընդամենը մեկ րոպե քսան վայրկյանում:

ԳԻՆԸ 15 Կ. ԻՆԴԵՔՍ 77806

# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԵՐԵԽԱՆԵՐԸ



ՎԱՂԻՆԱԿ ԷԼԻԲԵԿՅԱՆ, 12 տ.



ԱՐՏԱՇԵՍ ԲԵՅԲՈՒԹՅԱՆ, 12 տ.

ՎԱԽԹԱՆԳ ՄԽՍԿԱՐՅԱՆ, 10 տ.